ՑԱՂԱԳՍ

# ՄԱՐԴԿԱՅԻՆ ԻՐԱՒԱՆՑ

ԵՒ

## ՊԱՐՏՈՒՑ

ՑԱՂԱԳՍ

# ՄԱՐԴԿԱՅԻՆ ԻՐԱՒԱՆՑ

ԵՒ

# ՊԱՐՏՈՒՑ

ՇԱՐԱԳՐԵԱՑ

ՍԱՐԳԻՍ Վ. ԹԷՈԴՈՐԵԱՆ

ՎԵՐԱՏԵՍՈՒՉ ՀԱՅԿԱԶԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ

ՓԱՐԻԶ

Ի ՏՊԱՐԱՆՈՑԻ Ճ. ԱՐԱՄԵԱՆ

1858

# ԶԵԿՈՒՑՈՒՄՆ

---

Որպէս « Ամենայն գիրք աստուածաշունչք եւ օգտակարք, ի վարդապետութիւն են, եւ ի յանդիմանութիւն եւ յուղղութիւն եւ ի խրատ արդարութեան, զի կատարեալ իցէ մարդն Աստուծոյ յամենայն գործս բարութեան հաստատեալ, »

Նոյնպէս եւ ամենայն գիրք բարոյականք ի ծանօթութիւն են եւ ի կանոն բարուց, եւ ի կատարելութիւն բնական եւ իմացական կարողութեանց, զի երջանիկ իցէ մարդն

ինքնին եւ օգտակար նմանեաց իւրոց :

Թէպէտ եւ բազում մատեանք են բարոյականաց, եւ իմաստասիրականն ոճով ճառեալք, այլ մեք՝ ի բազմաց անտի ծաղկաքաղ արարեալ համառօտեցաք ի սմին զոր ինչ կարեւոր դատեցաք, եւ զայն պարզագոյնս որչափ մարթ էր, ի դիւրութիւն հասարակաց : Եւ յեօթն գլուխս բաժանեալ կարգեցաք զնոսին հանդերձ կարեւոր ինչ յաւելուածով :

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Մարդ ընկերական երկու ինչ ունի ի բնուստ սեպհական, որ են Իրաւունք եւ Պարտք ։

Իմաստութիւն՝ որ դեկավարն է մարդկայինս կենաց, եւ չթողու զնա թափառիլ վայրապար, ճանաչումն է եւ գործադրութիւն ճշմարիտ օրինաց մարդկութեան. եւ ի լրութենէ այսր օրինաց կազմին բարոյական կանոնք, որ կոչին ԻՐԱՒՈՒՆՔ ԵՒ ՊԱՐՏՔ ։

Իսկ սահման իրաւանց եւ պարտուց մարդոյ այս է ։

ԻՐԱՒՈՒՆՔ մարդոյ՝ է կարողութիւն առնելոյ զգործ ինչ, իշխանութիւն

վայելելոյ յիրս ինչ, եւ պահանջելոյ յայլմէ ինչ, զօրութեամբ այսր օրինաց Աստուծոյ. « Աճեցէք եւ բազմացարուք եւ լցէք զերկիր, եւ տիրեցէք դմա.» (Ծն. Գլ. Ա):

ՊԱՐՏՔ մարդոյ՝ է անքերի կատարումն օրինաց, որով կատարելագործի իմացականն էակ, եւ առաջնորդի ի սեպհականն անդ իւր վախճան, զօրութեամբ այսր պատուիրանի. « Զամենայն զոր միանգամ կամիջիք թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս եւ դուք արարէք նոցա, զի այս իսկ են օրէնքն եւ մարգարէք. (Մատ. Է, 12):

Ապա ուրեմն հիմն Իրաւանց մարդոյ՝ է հին օրէնք Արարչին, եւ հիմն Պարտուց նորա՝ է նոր պատուիրան Փրկչին:

---

ՑԱՂԱԳՍ

# ՄԱՐԴԿԱՅԻՆ ԻՐԱՒԱՆՑ

ԵՒ

# ՊԱՐՏՈՒՑ



## ԳԼՈՒԽ Ա.

### ՑԱՂԱԳՍ ԻՐԱՒԱՆՑ ԵՒ ՊԱՐՏՈՒՑ ՄԱՐԴՈՑ ԱՌՀԱՍԱՐԱԿ.

ԻՐԱՒՈՒՆՔ ԵՒ ՊԱՐՏՔ մարդոյ առնչական են, եւ անբաժք ի միմեանց, եւ են իբրեւ արմաւենիք երկու, որ ոչ բերեն զպտուղ, եթէ ոչ ի միասին աճեսցին։

Առնչութիւն իրաւանց եւ պարտուց մարդոյ այնչափ անձուկ է, զի եղծանին ամենայն սկզբունք բանի, կարգի, եւ

արդարութեան միանգամայն, երբ կամիցի որ բաժանել զնոսին ի միմեանց :

Պարտք աղքիւր են իրաւանց : Յայնժամ կարացից ես ասել, թէ այս ինչ իմ է, յորժամ յարգեմ զայն որ այլոյ է :

Օրենք չկարեն տալ մեզ ինչ, առանց պարտ առնելոյ զայլս տալ մեզ իրաւունս, եւ առանց հարկելոյ զմեզ տալ նոցա իրաւունս :

Պարտք մեր համեմատք են իրաւանց մերոց. քանզի պարտք են զոր ինչ ամենայն որ պարտի ամենեցուն, եւ զոր իւրաքանչիւր որ պարտի իւրաքանչիւր անձին :

Ժառանգական պարտք մարդկութեան են, զոր հարք մեր աւանդեցին մեզ, եւ զոր մեք աւանդեսցուք որդւոց մերոց. պարտք զորս ոչ ոք կարէ յետս դարձուցանել, եւ որք ոչ դադարին՝ հաստատանելովն իսկ, այլ նորոգին միշտ՝ եւ յայն

ժամ եւս՝ յորժամ հասուցեալ իւր իցէ ։

Այս վճոյ պարտապանին որ յետս դարձուցանէ զպարտատէրն ,՝ նա է որ տայ ծնանել յանցանաց եւ դատաւորաց ։

Պարտք ընդ մարդոյ ծնեալ են . քանզի հետեւանք են առնչութեան մարդոյ ընդ մարդոյ , եւ փոխանակութիւն օգնութեան , պաշտպանութեան եւ սիրոյ . ապա ամենայն իմաստք ընկերականք յայս մի բառ բովանդակին ։

Պարտք ոչ միայն հիմն են մարդկային շինուածոյ , այլ եւ գոյութեան նորա , փառաց եւ պայծառութեան նորին միանգամայն ։

Զօրութեամբ այսր ներքին կցորդութեան՝ պարտք առաւելուն ըստ չափու զարգացման ընկերութեան , եւ քաղաքական կատարելութիւն մարդոյ՝ է առաւել իմն իմացական զգացումն պարտուց . եւ յիրաւի , քանզի որչափ առաւել ի վեր

եղանիցես ի վաղեմի ընկերութիւնս, այնչափ նուազ երեւի այս զգացումն :

Առ Հռովմայեցիս որոց լեզուն այնչափ ճշգրիտ զիմաստս բացայայտէ, ի զուր խնդրի բառ մի համազօր *պարտք* բառին մերոյ : Զի բառս այս՝ բան է քրիստոնէական, բացատրութիւն քաղեալ համառօտի յայսմ պատուիրանէ աւետարանին, թէ « Սիրեսջիք զմիմեանս : »

Բովանդակութիւն է այսր նորոյ պատուիրանին առ մարդիկ, թէ՝ « Որ մեծն է ի ձեզ՝ եղիցի իբրեւ զկրտսերն, եւ առաջնորդն իբրեւ զսպասաւորն : »

Ապա հինքն ճանաչէին զպարտիս առն քաղաքացւոյ, այլ ոչ զպարտիս մարդոյ. ճանաչէին զքաղաքականն ընկերութիւն, այլ ոչ զմարդկայինն եղբայրութիւն :

Պարտք յառաջ են քան զիրաւունս. քանզի ոչ ոք ունի իրաւունս, եթէ ոչ պայմանաւ՝ պարտուց : Քանզի *պարտք*

բառիւ իմացեալ լինին ամենայն ընկերական իմաստք. Եղբայրակցութիւն որ յօդէ զմեզ ընդ միմեանս. Հաւատարմութիւն, որ տայ մեզ իրաւունս պահանջելոյ ինչ յայլմէ, եւ որով պարտիմք մեք այլում. Պատասխանատուութիւն որ կոչէ զիւրաքանչիւր որ տայ համարս ամենեցուն, եւ զամենեսեան՝ տալ համարս իւրաքանչիւր ումեք :

Պարտք գրեալք ի սահմանադրութիւնս եւ յօրէնս ժողովրդոց՝ զանազանին ըստ տեղեաց, ըստ ժամանակաց, եւ ըստ բարուց. բայց են եւ պարտք զորս տպաւորեալ է Աստուած ի սիրտ մարդոյ, եւ եդեալ ընդ պահպանութեամբ խղճի նորա. ահա զայն պարտ է մարդոյ առաւելապէս ճանաչել եւ անթերի լնուլ :

Կեանքն է սրբազան ինչ աւանդ, նմին թրի եւ պաշտպանել զայն՝ պարտք են մարդոյ : Անբաւական զոյով նորա կա-

տարել զայն ինքնին միայն՝ խնդրէ ձեռն օգնականութեան, որում պէտս ունի, եւ դնէ դաշն պարտաւորութեան՝ զոխելոյ երբեմն համարակաց շահուն զաւանձին իւր շահ, այլ եւ զայն պայմանաւ գտանելոյ անտի զօգուտ իւր. եւ ընկերութիւն որ չկարիցէ յապահովել նմա զայն՝ չունի բարեկարգ ինչ վարչութիւն, եւ չկարէ հանապազորդել:

Երկիւղածութեամբ լնուլ մարդոյ ըզպարտս իւր՝ առանց շահու եւ անձնասիրութեան, իմաստութիւն է. իսկ լնուլ զայն, հանդերձ վտանգաւ բարօրութեան իւրոյ՝ առաքինութիւն:

Չիք ինչ որ կարիցէ խափանել զայր երկիւղած ի լնլոյ զպարտս իւր յորում եւ իցէ վիճակի. իսկ որ անփոյթ առնէ զպարտուք իւրովք, է նա իբրեւ զվատ պարտապան որ ոչ հատուցանէ զպարտս իւր:

Ոչ որ բարւոք լինի զպարտս իւր, եթէ ոչ որ սիրէն զայն, եւ ոչ որ կարէ սիրել զայն, եթէ չիցէ այր պատուաւոր:

Պարտ է մարդոյ՝ զուարճանալ ընդ պարտս իւր:

Վայ է մարդոյն որ չգիտիցէ օր մի ի զուարճութեանց իւրոց զոհել պարտուց մարդկութեան: Նախ Պարտք եւ ապա Զուարճութիւնք:

Մարդն ծնեալ է վասն ընտանեաց եւ վասն ընկերութեան, պարտի նոցա զհոգ իւր եւ զգործունեայ գործակցութիւնն յամենայն պէտս նոցա:

Պարտք մարդոյ են օգնել գործել այլոց, եւ թէ հնար ինչ իցէ՝ բազմաց, իսկ եթէ ոչ՝ զէթ սակաւուց, զէթ մերձաւորաց, ապա թէ եւ այն եւս ոչ՝ անձին իւրում: Զի որ որ օգտակար զանձն ընծայեցուցանէ այլոց, զհասարակաց գործ վարէ. որպէս որ վատթարացուցանէ զանձն, ոչ

անձին եւեթ վնասէ, այլ եւ ամենեցուն նոցա, որոց բարութեամբն կարօղ էր օգտել. սոյնպէս եթէ որ ի լաւութիւն անձինն ճգնի, նովին իսկ օգտէ այլոց, զի պատրաստէ նոցա օգտամատոյց զոր:

Չէ պարտ մարդոյ առնել այլում զայն, զոր չկամի թէ որ նմա արասցէ, եւ պարտի առնել այլում՝ զոր կարէ իրաւամբ ցանկալ անձին:

Ունի մարդն իրաւունս ազատաբար պաշտելոյ զկրօն իւր, միաբանեալ զայն ընդ օրինաց որք պաշտպանեն բարեկարգութեան հասարակաց:

Կարող է մարդ վայելել եւ տնօրինել զինչս իւր, պահելով զիրաւունս ընտանեաց իւրոց եւ ընկերութեան:

Ազատ է մարդ առնել եւ խօսել զոր ինչ եւ կամի՝ առանց վնասելոյ բարոյականին, հասարակաց եւ իւրոյ շահուն:

Հաւասար իրաւամբք ծնանին մարդիկ.

առաքինութիւն, համեմատ, եւ բարերարութիւն միայն իրաւունս տան զերակայութեան :

Օրենք սահմանեալ են ի կարգաւորել զընկերական յարաբերութիւնս, եւ պարտին յենուլ ի յաւիտենականն արդարութիւն :

Օրենք չկարեն հրամայել ինչ անիրաւութիւն, եւ ոչ ներել անիրաւութեան, եւ իւրաքանչիւր որ պարտի հաւասարապէս պաշտպանութիւն եւ կամ պատուհաս անտի ընդունել :

Ընկերութիւն պարտի խնամ ունել համասարակաց մարդկան՝ ամենեցուն առհասարակ, եւ ջանալ հասանել յօգնութիւն նոցա. բայց պարտականութիւն նորա չկարէ հեռագոյնս գնալ. քանզի ուր դադարի պարտաւորութիւն ընկերութեան, անդ սկսանի պարտաւորութիւն մեծատան. եւ բարոյական օրենք առնեն զնա պատասխանատու թշուառութեանց (որոց

ոչ պատճառ իցէ թշուառն) զոր նա կարող է թեթեւացուցանել :

Ամենայն մարդ ունի իրաւունս կելոյ, բայց եւ ընկերութիւնն ունի իրաւունս պահպանելոյ :

Պատիժն քաղաքական մահու ոչ պարտի լինել առ վրէժխնդրութեան, եւ ոչ վասն քաւութեան, այլ միայն վասն նպատակի խնայելոյ ի կեանս այլոց ի մարդկանէ : Սարսափելի է պատասխանատուութիւն օրէնսգիտին եւ դատաւորին :

Մարդն ի բնէ բերի ի մեծացուցանել զիրաւունս իւր եւ ի նուազեցուցանել զպարտս : Այլ օրէնք բարիք սահմանեն այնմ չափ արդար : Ոչ խիղճն առնէ մարդումս զճշմարտութիւն իրաց, այլ կանոնն պարտուց :

Քան զամենայն բռնաւորութիւն խօլականագոյն այն է' կամիլ սիրելի լինել այլոց ի պարտէացն :

Առաջին ընկերական պարտք են յարգել եւ պաշտպանել զկեանս ընկերաց, եւ լինել զպարտս սահմանեալս ի բնութենէ եւ ի կրօնէ :

Առաջին պարտք բնութեան են միտ դնել օրինակի բարեաց : Մեք զպարտս մեր արասցուք, զմնացեալն Աստուած արասցէ, ասէ առածն :

Որ գիտէն թէ զոն պարտք առ Աստուած, առ անձն եւ առ մերձաւորս, նա է իսկապէս մարդ կատարեալ :

Ամենայն բարոյականութիւն մարդոյ բովանդակի համառօտիւ յանվրէպ կատարման պարտուցն առ Աստուած, առ անձն, եւ առ ընկերս :

Քրիստոնէականն բարոյականն ի սահմանել անդ զկանոնն յարաբերութեանց մարդոյ ընդ ընկերս, համառօտեաց զամենայն պարտս առաքինութեան ի պարզ պատուէրն չառնելոյ այլում,

զոր չկամի թէ որ նմա արասցէ ։

Դժուարագիւտ է երջանկութիւն. վասն զի սակաւք գիտեն թէ ո՛ւր իցէ, ի պարտս, ի զբութեան, եւ ի բարերարութեան ։

Որ անկեղծ մտօք կամի լինել առաքինի, իմանայ զծանրութիւն բնիկ պարտուց մարդոյ, առանց յաւելուածոյ նորանոր պարտուց ։

Գիտութիւն պարտուց հաստատեալ կայ միշտ ի գիտութեան ազատութեան ։ Եւ զինչ գիտութիւն պարտուցն. գիտութիւն անձնանուէր զոհի, կելոյ վասն Աստուծոյ եւ վասն մարդկան, եւ ոչ վասն անձին միայնոյ. ահա այս են պարտք ։

Նախախնամութիւնն ներէ երբեմն զի դիւրասցին պարտք, այլ բազում անգամ պարտաւորէ զմեզ դիմել առ նա ի նեղութեան եւ ի վտանգի, մոռանալ վասն նորա զախորժակս մեր, զշահ, զբարեկամս. զբարկութիւն, եւ զլոյս մեր միանգա-

մայն, եւ տալ նմա զկեանս մեր զկխովին :

Եթէ պահէ նա վարձ ինչ առն առա-քինւոյ՝ թագուցանէ զայն յետուստ զերեզ-մանին. զի զայն զին սահմանեալ է նա վարձ :

Այլ մեք տկարք եւ կոյրք պակասիմք զճանապարհայն, տեսանելով զներկայ թշուառութիւնն կարի շատ, եւ զապա-գայ վարձն ոչ բաւական :

Առաւել կամիմք հրաժարիլ յագատու-թենէ, քան հաւանել զոհին :

Մեծագոյն խրատ է մարդն անձին ի-րում եւ մեծագոյն տեսարան. եւ առաջին պայման զիտելոյ ուղղել զանձն, է ան-շուշտ զիտելն ճանաչել զանձն :

Հաւատարութիւն իրաւանց բովանդակէ զհաւատարութիւն պարտուց. քանզի պարտք են պարտաւորութիւն յարգելոյ զիրաւունս այլոց:

Ճանաչել թէ ունիմ ես իրաւունս ազատ

լինելոյ, է ճանաչել՝ թէ այլք ի մարդկանէ պարտին յարգել զազատութիւն իմ :

Եւ ճանաչել թէ այլք ի մարդկանէ ունին իրաւունս ազատ լինելոյ, է ճանաչել՝ թէ պարտիմ ես յարգել ի նոսա զկիրառութիւն այսր իրաւանց : Որպէս ճանաչեմ ես զիրաւունս իմ, նոյնպէս ճանաչեմ զիրաւունս այլոց ամենեցուն. վասն զի ամենայն մարդիկ ունին զնոյն իրաւունս. չկարեմ ես ճանաչել զիրաւունս իմ, առանց ճանաչելոյ զպարտս իմ. քանզի իրաւունք կորուսանեն զսահման եւ զէութիւն իւրեանց՝ եթէ բռնաբարիցին :

Պարտ է մարդոյ ճանաչել զպարտս եւ զիրաւունս իւր, առ ի պաշտպանել միումն, եւ ի լնուլ զմիւսն. ապա թէ ոչ՝ ոչ ելցէ երբէք ի թշուառութենէ իւրմէ :

Պարտք ի վեր են քան զամենայն շահս մեր, եւ քան զամենայն սէր մեր : Հանգամանք իմ եւ ցանկութիւնք, եւ շահք,

բովանդակ մի է եւ միշտ միօրինակ :

Երկրորդ կնիք արդարութեան այս է, զի նոյն է վասն ամենայն մարդկան, վասն իմ, վասն քո, վասն հարցն մերոց, եւ վասն ապագայ սերնդոց :

Եթէ ճանաչեմ ես՝ թէ իրաւունս ունիմ կելոյ, խորհելոյ, եւ ազատ լինելոյ, այսպ եւ դու ունիս իրաւունս կելոյ, խորհելոյ եւ ազատ լինելոյ :

Անկարելի է թէ ունիցիմ ես իրաւունս ինչ, որ այլ ազգ իցէ յիրաւանց այլոց :

Իրաւունք զոր ես ունիմ, եթէ դու չու-նիցիս, կորուսանեն զայս անուն ցանկալի եւ սրբազան, Արդարութիւն :

Աստի իսկ յառաջ եկեալ է այս ոճ բա-նից. « Իրաւունք զիրաւունս ծնանին : »

Չունիմ ես ինչ իրաւունս, զոր չունիցին եւ այլք ամենեքեան :

Այլք պարտին պատկառել յիրաւանց իմոց, եւ ես պարտիմ պատկառել յի-

բաւանց ամենեցուն ։ Վասն որոյ պարտքն նախ բացարձակ են. եւ ապա համարակաց, եւ ամենեքեան հաւատար եմք առաջի փառաւոր լծոյ պարտուց ։

Այս աւացուած վերածի յայս ոճ բանից.

« Զոր դու ատես, ումեք մի առնիցես. »

Բայց արդարութիւնն ոչ է արդեօք բաւական պիտոյից ազգի մարդկան. այնպես զի իւրաքանչիւր ոք ընդ իշխանութեամբ նորին վայելիցէ լիով յիրաւունս իւր, եւ ոչ լքեալ թողցի յաշխարհի, բափուր ի նպաստից եւ յօգնութենէ որ կարեւոր է ամենեցուն ։

Յորժամ ումեք ի մարդկանէ պակասիցի հաց, եւ այլ ոք ասիցէ. « Զինչ խնդրէ նա, եւ միթէ Ես արգելի նմա զայն ։ Ես ոչ յափշտակեցի զնորայն ։ Իւրաքանչիւր ոք ի տան իւրում, եւ ամենայն ոք թող զանձն հոգասցէ ։ »

Եւ յորժամ երկրորդեսցէ ոք զբանն

Կայենի. « Միթէ պահապա՞ն իցեմ եղբօրն իմոյ : »

Եւ այրիքն, որբն, հիւանդն, տկարն թո-ղեալ լիցին ի բաց, եւ ոչ մի ինչ փոխա-դարձ օգնութիւն, ոչինչ անշահախնդիր ծառայութիւն, այլ ամենայն ուրեք անձ-նասիրութիւն, ցրտութիւն եւ անփութու-թիւն. յայնժամ ոչ եւս ճշմարիտ զօդք բարեկամութեան մնան յաշխարհի, եւ ոչ ուրախութիւնք հաղորդեալք միմեանց, այլ առաւել եւս տրտմութիւնք, վիշտք եւ հառաչանք հասարակաց :

Առանձինն կեանք ի խորս քարաքան-ջիւր սարից մաշին այնուհետեւ, իբրեւ զկանթեղ ինչ ի գերեզմանի, լուսաւորելով զդիակն մարդոյ, քանզի սա անձնեան ի կարեկցութենէ եւ ի սիրոյ, ոչ այլ ինչ է, եթէ ոչ դի շարժուն : Քանզի կարիցէ արդեօք մարդկայինս ազգ շինել զկենդա-նութիւն առանց փոխադարձ հաղորդակ-

ցուցեան բարեաց, զոր հաւատացիր որ ստացեալ զօրութեամբ օրինաց արդարութեան. ապա մայլ իմն օրէնք հարկաւոր են առ պահպանութիւն նոցին. եւ այս օրէնք ՈՂՈՐՄՈՒԹԻՒՆ է, կամ ընկերսիրութիւն. եւ ողորմութիւնն որ կազմէ յանդամոց սփռելոց մարդկութեանն մի կենդանի մարմին, լրումն է պարտուց, որոյ հիմն Արդարութիւն է:

Զինչ լինէր արդեօք մարդն զրկեալ յամենայն ազատութենէ որ ի վերայ երկրի. այնպէս զի չկարիցէ ոչ գնալ եւ ոչ գալ, եւ ոչ գործել ինչ, այլ այնչափ միայն, որչափ այլ ոք թոյլ տայցէ նմա:

Զինչ լինէր արդեօք, եթէ ժողովուրդ մի ողջոյն հասանէր յայս պայման:

Վայրի անասունք երջանկագոյն կեանս վարեն եւ ոչ յայն նուաստութիւն հասանեն ի մէջ անտառաց:

Թող զայն, զինչ լինէր մարդն յինքն

միայն ամփոփեալ անձնասիրութեամբն, չվնասելով ումեք ուղղակի, եւ ոչ օգնութիւն գտանելով յումեքէ, այլ կելով միայն վասն անձին իւրոյ :

Իրաւունք ազատ կացուցանեն զմարդ, այլ պարտք միաւորեն զնա, եւ միաւորութիւնն կենդանութիւն է, եւ կատարեալ միաւորութիւնն՝ կատարեալ կենդանութիւն :

Իրաւունք մարդոյ՝ էութիւն անձին իւրոյ է, կեանք իւր եւ ազատութիւն իւր. եւ յիրաւի՝ քանզի իւրաքանչիւր ոք անջատ եւ զանազան է յայլոց ամենեցուն, եւ ունի զսեպհական գոյութիւն իւր, բաժանեալ եւ անկախ, եւ զմարմնական գործարանս իւր, զմտածութիւն, եւ զկամս իւր առանձինն :

Երկու ազգք կենաց են մարդումս, մարմնաւոր կեանք եւ հոգեւոր. « Ոչ հացիւ միայն կեցցէ մարդ, այլ ամենայն բանիւն

Աստուծոյ ։ » Այսինքն, ճշմարտութեամբ որ սնուցանէ զիմացականութիւն նորա ։

Չինչ լինէր արդեօք մարդն առանց ծանօթութեան կրօնական եւ բարոյական օրինաց, որք միաւորեն զնա ընդ Աստուծոյ եւ ընդ նմանիս իւր, եւ բաժանեն զնա յանասնոց պարզեւօք առաքինութեան ։

Զէ բաւական մարդոյ ճանաչել զիրաւունս իւր, պարտի ճանաչել եւ զպարտս իւր. քանզի գործածութիւն պարտուցն ոչ նուազ կարեւոր է քան զվայելչութիւն իրաւանց, ի պահպանութիւն օրինաց պատուիրելոց յԱստուծոյ, առանց որոյ ոչ ունի մարդ յուսալ խիթք ի վերայ երկրի ։

Իրաւունք երաշխաւորութիւն իմն են զոյութեան մարդոյ եւ ազատութեան նորա, եւ բուն իսկ ազատութիւն նորին են, զի նոքօք լինի մարդն անձն ոք, եւ ոչ սոսկ իր ինչ, որում որ նախ հասանիցէ ի վերայ' տէր է առնել ընդ նա զինչ եւ կամիցի ։

Եւ շնա՛տ իցէ մարդոյն ազատ լինել, որ քնա. . քանզի չիք ինչ ի տիեզերս անձին իւրում բաւական եւ ինքնաւուն : Տայ որ զի ընկալցի, եւ ընդունի զի տացէ, եւ կեանքն ազատէին յամենայն կողմանց, առանց փոխադարձ պարգեւաց յամենեցունց առ իւրաքանչիւր որ, եւ յիւրաքանչիւր ումեքէ առ ամենեսեան :

Ո՞ որ անկարօտ իցէ ամենեւին օգնութեան եւ նպաստից այլոց : Մարդն պէտս ունի օգնութեան ի մանկութեան, ի հիւանդութեան յամենայնի եւ միշտ :

Արդ ցոյց զմարդ որ որ չունիցի կցորդութիւն ընդ ընկերս իւր, չընդունիցի ինչ ի նոցանէ, եւ չտայցէ ինչ նոցա :

Ո՞չ տապարէն լինէր այնպիսին վայրենի ի մէջ անասնոց, եւ նաւաստադոյն քան զվայրենիս. քանզի վայրենին կեայ ի մէջ ընտանեաց իւրոց, յընկերութեան իւրում,

եւ ունի զմատուակ իւր եւ զկորիւնս իւր, զորս եւ խնամէ, եւ յաճախ եւս ընկերակցի ի փոխադարձ պաշտպանութիւն եւ ի հասարակաց վտանգի՝ ընդ անհատս իւրոյ տեսակին :

Մարդն զատուցեալ յայլոց ի մարդկանէ, թողեալ անխնամ զլեզուն, զիմացականութիւն եւ զակր, լինէր արդեօք ի մէջ արարածոց ազգ ինչ հրէշի, առանց ծննդեան, առանց կապակցութեան, եւ առանց անուան, այնպիսի ինչ զոր չէ կար զմտաւ անգամ ածել. եւ հարկ է սարսափմամբ հայիլ ի նա :

Եթէ համախոհութիւնն եւ բնական աղդումն մերձեցուցանեն զանասունս առ միմեանս ըստ սեպհական օրինաց նոցին, այլ պատճառք են որ կարգաւորեն եւ միաւորեն զազգս արարածս :

Այս է հիմն ընկերութեան, անանցօրինելի պայման հասարակաց գոյութեան :

Իրաւունք յինքն ամփոփեն զիւրաքանչիւր ոք, քանզի ունին անմիջական նպատակ զպահպանութիւն անհատին, եւ բովանդակ իրաւունքն վասն անհատական գոյութեան նորա են. զի եւ ըստ այսմ ժողովուրդն հաւաքական անհատ ոք է:

Պարզ իրաւունք եթէ անջատիցի ի պարտուց, լինի պարզ անձնասիրութիւն, եւ ըստ հին առածին ծայրագոյն անիրաւութիւն: Եւ յիրաւի, քանզի զինչ է անիրաւութիւն, եթէ ոչ բացարձակ նախադասութիւն անձին ի վեր քան զայլս, կամ զոհ այլոց վասն իւր: Առնելն զպանութիւն կամ զգողութիւն, եւ կամ զոր եւ իցէ յանցանս, ոչ այլ ինչ է, եթէ ոչ զոհել զայլ ոք կրից անձին եւ ցանկութեան, եւ առանձին շահու իւրոյ:

Իսկ պարտք՝ ընդհակառակն, զիւրաքանչիւր ոք մղեն արտաքոյ անձին իւրոյ.

քանզի նպատակ ունին զպահպանութիւն եւ զբարին հասարակաց :

Լնուլ զպարտս անձին, է առնել օգտակար ինչ այլոց :

Պարզ պարտքն՝ է պարզ նուիրումն կամ արդարութիւն, եւ ծայրագոյն սէր. եւ յիրաւի, քանզի զինչ է արդարութիւն, եւ զինչ սէր, եթէ ոչ նախադասութիւն այլոց քան զանձն, կամ զոհ անձին վասն այլոց :

Իրաւունք սրբազան ինչ են. քանզի պահպանողական սկզբունք են անհատին, սկզբնատարերք ընկերութեան եւ կարեւոր արմատ նորին :

Պարտիք եւս սրբազան ինչ են. քանզի պահպանողական սկզբունք են ընկերութեան, եւ առանց այնր՝ ոչ որ կատարելագործի եւ առնու զգոյութիւն :

Ո՛հ քանի՛ երջանիկ լինէր երկիր, եւ ազգ մարդկան արագ յառաջէր ի ճանա-

պատժին, յորում չպարտի փոյթ առնուլ երբեք, եթէ իրաւունք պահպանեին, եւ պարտք միշտ կատարեին :

Զիք արարած որոյ գոյութիւն ոչ կախիցի զայլ արարածոց :

Զինչ է կեալն՝ — ընդունել : Զինչ մեռանելն — տալ :

Կեանք յառաջնում պայմանի իւրում՝ զոհ ինչ է, հաղորդութիւն մշտնջենաւոր եւ ընդհանուր :

Զոր ինչ անբան մարմինք, տունկք, անասունք, հպատակեալ բնութեան՝ առնեն կուրաբար եւ անհրաժեշտ մղմամբ, մարդն պարտի առնել ազատօրէն, հպատակել ամենեցուն որոց անդամ է, սիրել զընկերս իւր իբրեւ զանձն իւր, կամել նոցա բարիս, որպէս կամի անձին, խնդալ ընդ խնդութիւն նոցա, եւ ցաւել ընդ վիշտս նոցա, օգնել նոցա, միաբանել ընդ նոսա, նուիրել յօգուտ նոցա, եւ աշխա-

տել միաբանութեամբ յանեցուցանել զան-հատս, եւ զծառայութիւնս ածել ի սուրբ միութիւն մարդկեղէն սեռի :

Պարտք առ ամենայն եւս տարածանին . քանզի ամենեքեան ունին ի տիեզերս զիւրեանցն տեղի, ամենեքեան կատարեն ի նմա, ըստ դիտման գերագոյն իմաստութեանն, զպաշտօն իւրեանց անշփոթ կարգաւ, ամենեքին վայելեն զպարգեւս Աստուծոյ, եւ ունին իրաւունս վայելելոյ ի նոսին :

Եղծանել զմի եւեթ յայնցանէ ըստ քմաց, կամ մատնել զայն ի տանջանս վտարապար, գործ չար է, եւ հակառակ կարգի օրինաց :

Պարտ է մարդոյ փառաւորել զԱստուած յամենայն գործս նորա, եւ սիրել սիրով նորին զամենայն մարդիկ :

Չիք ընկերութիւն առանց պարտուց . քանզի եւ ոչ առանց պարտուց մնայ ինչ կապակցութիւն ի մէջ մարդկան :

Չառնել այլում, զոր չկամիմք թէ այլք մեզ արասցեն, այս արդարութիւն է. առնել այլում, զոր կամիմք թէ այլք արասցեն մեզ. այս ողորմութիւն է․

Զինչ է մարդ առանց պարտուց. ազգ ինչ առանձին հրէշի, արձակեալ ի կապոյ համակիր առնչութեան եւ սիրոյ եւ առանձնացեալ իբրեւ զգազան վայրի ի կաղաղի իւրում, ի շարժել քաղցոյ առնէ զյափշտակութիւն, եւ այնու յագեալ՝ մտանէ ի քուն :

Եւ զինչ է մարդ առանց իրաւանց, եթէ ոչ սոսկ գործի ինչ ի ձեռս նոցա որք ունին իշխանութիւն ի վերայ ընտանի անասնոց խարեանց, ձիոց եւ եզանց :

Մարդն միայնակ չկարէ առնել ինչ երբէք, ոչ պաշտպանել իրաւանց իւրոց, յորոց վերայ գոն անդադար յարձակմունք, եւ ոչ վերստին ի ձեռս բերել զնոսին, եթէ ոչ միաբանութեամբ ընկերակցաց,

այլ եւ ոչ միաբանութեամբ կարէ ինչ առնել, առանց անթերի կատարման պարտուց իւրոց, առանց փոխադարձ զոհին նուիրման, որ տայ իւրաքանչիւր ումեք կեալ սիրով ընդ ամենեսին, եւ իւրաքանչիւր որ ունի զոյժ ամենեցուն իբրեւ ի նեցուկ իրաւանց անձին եւ պաշտպանութեան:

Համառօտիւ ասել, պարտ է մարդոյ ճանաչանել պարտուց, վասն զի պարտիք են: Երէ ճանաչանի պարտուց, վասն զի պարտիք են, խորհի նա միանգամայն զերծանել այնու ի պատժոց սահմանելոց վասն զանցառութեան նոցին, կամ ընդունել վարձս սահմանեալս վասն առաքինութեան: « Չի որդիք աշխարհիս այսորիկ իմաստնագոյնք են՝ քան զորդիս լուսոյ յազգս իւրեանց: »

Առաւել խելամուտ եմք մեք իրաւանց անձանց մերոց, քան իրաւանց այլոց.

քանզի անձնասիրութիւն պայծառ ցուցանէ մեզ զիրաւունս մեր, եւ մթագնէ զիրաւունս այլոց. եւ քանզի նոյն իրաւունք են ամենեցուն, ուսցուք զայն մանաւանդ ի մեր իսկ անձինս :

Զունի մարդ իրաւունս չեզոք կամ անկուսակից կալոյ առ ընկերս իւր, այլ ունի իրաւունս օգնութիւն ի նոցանէ զտանելոյ :

Մարդկային օրէնք ասեն.

« Մի սպանաներ : »

Բայց խիղճն յաւելու.

« Մի տար թոյլ մեռանել : »

Ցորմէ եւ այս իմաստ.

« Արա այլում, զոր կամիս թէ քեզ արասցեն : »

Ցայս երկուս պարզ սասցուածս բովանդակի ամենայն գործադրութիւն բարոյականին :

Եթէ լսեմք խղճի մերում՝ յանդիմանէ

նա զանձնասիրութիւն մեր որ շարժեն զմեզ առնել չարիս, եւ չթողու առնել բարիս :

Եթէ խորհիմք զԱստուծոյ, իմանամք զի պահանջէ նա ի մենջ փութաջան եւ գործունեայ զնայցս, բերկեալք ազատս արար զմեզ :

Եթէ հայիմք ի կարգ աշխարհի եւ ի վիճակ մեր, զգամք զի ոչ յայն սակս զտանիմք ի տեղւոջս յայսմիկ, զի բեռն լինիցիմք աշխարհի. քանզի ամփոփել զանձն ընդդէմ այլոց' է իբրեւ չեզոքութեամբ ապառազինիլ. եւ եղանել ի ներդաշնականութենէ տիեզերաց' է դատապարտել յոչնչութիւն զկարողութիւնսն տուեալս մեզ ի սիրել, ի խորհել, եւ ի գործել :

Եթէ արդարեւ ոչ արար Աստուած ընդունայն ինչ, եւ ոչ զոյ յաշխարհի տեղի անպիտան, ապա եղծանեմք մեր զօրէնս Աստուծոյ եւ զիրաւունս արարածոց նորա,

երբ փակիցեմք զսիրտս մեր ընդդէմ այլոց

Այնչափ զանձք սիրոյ, իմացականութեան, եւ կարողութեան յայն սակս աւանդեալ են մեզ, զի տացուք վայելել անազգի մարդկան : Աւանդապահ եմք մինոցին, եւ յորժամ դարձուցանեմք զնոսյ յետս անօգուտ, կամ յորժամ յօգուտ միմիայն ի կիր առնումք զայնս, զրկեմ զմարդիկ յիրաւանց իւրեանց, եւ զԱստուած ի փառաց իւրոց :

Մինչ նախախնամութիւնն ոչ ունի նպատակ ինչ, յորժամ առաքեաց յա խարհ զԳոլոմպոս ումն, զԳալիլէոս ումն զՆեւտոն ումն, եւ զայլս սոյնպիսիս :

Եթէ մեռեալ էին նոքա առանց ի զոյ ածելոյ զհանճար իւրեանց, մինչ անպաճոյ արձակեր զնոսա Աստուած. կարեմն նոք սել ցնա ի յանդիմանն լինել նմա 

« Անմեղ եմ ես, զի չեմ վնասեալ ո մեք : »

Թէպէտ եւ տրուպք եմք եւ տկարք, այլ ընկալեալ եմք զձիրս մեր՝ կարեմք առնել սակաւիկ ինչ բարի ի խոնարհ մերում վիճակի: Արդ եթէ կարեմք մեք առնել զայն, ապա եւ պարտիմք առնել անխափան:

Որ կարէ բժշկել զհիւանդ զոք, եւ թողու զնա ի կիրս վշտաց, եղծանէ նա զօրէնս արդարութեան չհպատակելով նմին:

Կամիմք բարերարս երեւել. մինչդեռ քաղաքավարս եւեթ եմք:

Եւ զի մի՛ սխալիցիմք ի ճիշդ, ի բացարձակ, եւ յընդհանուր պարտաւորութեանն, զոր բարոյականն դնէ ի վերայ մեր, այն է օգնել մարդկան ընչիւք, ժամանակաւ, եւ լուսաւորութեամբ մերով, եւ լինել նոցա յամենայն դէպս ոչ թշնամի, ոչ անզանազան, այլ եղբայր ոք, զոյ յաւետարանի բան մի որ ասէ զայ ի յիշատակութիւն, եւ զոր պարտ է գրել յամենայն էջս բա-

բոյականն զրոց. « Սիրեսջիք զմիմեանս, զի այս են օրէնքն եւ մարգարէք : »

Այսչափ ինչ ընդհանուր քննեալ զիրաւանց եւ զպարտուց մարդոյ, քննեսցուք արդ մասնաւորաբար եւ կարգ ըստ կարգէ, թէ զինչ են պարտիք մարդոյ առ անձն իւր, առ մարդիկ, եւ առ Աստուած :



# ԳԼՈՒԽ Բ.

## ՅԱՂԱԳՍ ԹԷ ՊԱՐՏԻ ԱՄԵՆԱՑՆ ՈՔ ՊԱՀՊԱՆԵԼ ԶԻՐԱՒՈՒՆՍ ԱՆՁԻՆ.

Իմաստութիւն է պահպանել զհանճար մեր ի նախատանաց, եւ յամենայն վնասուց, եւ յաղթել ճեշտութեան եւ ցաւոց, չառնել ինչ վայրապար, ոչ երբեք ի կիր առնուլ զստութիւն եւ զկեղծաւորութիւն : Մ. Աւրելիոս :

Պարտք մարդոյ առ անձն իւր՝ բաժանին յերկուս, ի դրական եւ ի բացասական, կամ թէ ի պարտս օգնելոյ եւ ի պարտս չվնասելոյ :

Պարտք մարդոյ բացասականք առ անձն իւր՝ են չսպանանել զանձն, չնուաստացուցանել զայն,՝ չանպիտանացուցանել, չակարացուցանել եւ չխեղել :

Պարտք մարդոյ դրականք առ անձն իւր, են պահպանել զգոյութիւն անձին, կատա-

բեկագործել եւ զօրացուցանել զկարողութիւն իւր :

Ստոյիկեանք առաքինութիւն ինչ համարէին զանձնասպանութիւն, վասն զի չհաւատային նոքա յԱստուած եւ ի հանդերձեալ կեանս :

Իսկ մեք որ հաւատամք՝ թէ գոյ մի Աստուած՝ չկարեմք զնայ առ նա, եթէ ոչ՝ յորժամ նա կոչեսցէ զմեզ :

Եթէ պարտք ինչ պատուիրեալ են մարդոյ, մեծագոյն եւս յանցանք են նմա պակասել ի չանից իւրոց՝ քան սխալիլ ի նոսին :

Հաւատամք հաստատութեամբ, թէ ոչ գոյ յաշխարհի թափուր ինչ տեղի, եւ թէ յետին հատն աւազոյ ունի զիւր պաշտօն եւ զվիճակ :

Ոչ կամիմք վիճել ընդ այնոսիկ, որք անբաւականս կամ անպիտանս ցուցանեն զանձինս, որպէս զի հրաժեշտ տացեն

ի պաշտաման իւրեանց, զոր բեռն կո-չեն, եւ զոր մեք պարտս իսկ անուանեմք :

Մեծագոյն մասն կարծեցեալ անկարո-ղութեան եւ անպիտանութեան մարդկան, են տհաճութիւնք եւ զարշումն, որ յառաջ գան յինքնահաճ կամաց եւ յանձնասէր բնւսոյ բարուց, հանդերձ կանխակալ սովորութեամբ, վասն այնորիկ եւ ար-համարհեն զճանաչումն եւ զկարծիս այլոց, թէպէտ եւ ուղիղ եւ օգտակար քան զիւրեանցն իցեն այնորիկ, եւ վասն բարւոյ հասարակաց :

Ո՞վ անձնասիրութիւն չար եւ կանխա-կալ սովորութիւն, յո՜ր վայր թշուառու-թեան տարեալ հասուցանէք զմարդկային ընկերութիւն :

Ոչ մասնաւորաց անկանի ընտրել զպարտս անձանց, այլ հասարակաց :

Եթէ բազում ժամանակս վարեցար ար-դարութեամբ ի պաշտաման քում, մի

տեր՝ թէ անգիտանան զատր, զի չգեալ են զպարտս քո։

Ունէիր յերեկն պարտս վարելոյ արդարութեամբ, ունիս այսօր պարտս տանելոյ արդարութեամբ. օգնեցեր դու մարդկան հանճարով քով՝ օգնեա և օրինակաւդ։

Երբ մին ի պարտուց տասն ծանրագոյն է քան զմիւսն, առաւել ևս զօրութեամբ յանձին կալցիր զայն. դատայիք լինել անտի՝ ամօթալի ևս է։

Թեպէտեւ յայտ յանդիմանութեամբ գիտեմք թէ ոչ ևս կարողք իցեմք առաւ ինչ ծառայութեան հարկանել հասարակաց, սակայն ոչ թէ այնու տեարս կենաց մերոց լինեմք. քանզի չկարեմք յանցանել յանցանս ընդդեմ հանրական կարգի օրինացն որ ի մեզ։

Ասեն մարդիկ սովորաբար, ի պատասխանի մեղադրանացն որոց արժանի գտանին, զառածս զայս, թէ

« Ես ոչ ունէք արարի վնաս, եթէ ոչ անձին իմում : »

Կամին ասել, թէ որովհետեւ արարք իմ ոչ վնասեն շահու այլոց, եւ ոչ ի վտանգ արկանեն, բայց եթէ զիմս, ապա ոչ պարտիմ համարս տալ ումեք, ի կիր առնում զիրաւունս իմ :

Թեպետ եւ ազատ եմ ես ի կիր առնուլ զինչս իմ շռայլութեամբ, որովհետեւ շռայլութիւնն զայս եւեթ վնաս առնէ, զի զրկէ զիս ի զուարճութենէ ինչ, առանց խափանելոյ զիս յառնելոյ բարիս այլոց. սակայն ազատութիւնս այս չէ անբերի. քանզի ճոխութիւնն կարողութիւն ինչ է, եւ ամենայն անբարի կիրառութիւն կարողութեան իրիք դատապարտելի է :

Սակաւ յոյժ դէպք են յորս կարող իցեմք վնասել անձանց մերոց, առանց վնաս գործելոյ եւ այլոց :

Զկարեմք մեք յայտնապէս վասնել

զինչս մեր, առանց ի կորուստ մատնելոյ զհնարս օգնական լինելոյ այնոցիկ որք տառապին մերձ առ մեզ. այլ վնասն զոր առնեմք անձանց մերոց, վնաս է աղքատաց :

Եթէ ոք կամիցի խելամուտ լինել, առանց մեծի դժուարութեան գտանէ, զի չիք ինչ դէպք, յորում մարթ իցէ ասել առանց յանդգնութեան՝ թէ « Ես ոչ արարի ումեք վնաս, եթէ ոչ անձին իմում : »

Քանզի նախ իմաստս այս սուտ է եւ թեթեւ մտաց ծնունդ, այլ ոչ կարէ ոք անձնասպան լինել եւ զվնասն ինքն միայն կրել :

Եթէ ճշմարիտ իցէ, թէ կարէ մարդ ի դէպս ինչ նուազեցուցանել զկարողութիւն անձին իւրոյ, առանց հասուցանելոյ այնու վնաս ինչ ընկերութեան, միթէ այս նուազութիւն կարողութեան նորա չիցէ ըստ ինքեան չար : Քանզի կարողութիւն

մարդոյ պարտի յամենայնի ՚ի գործ ածել զատ կամաց նախախնամութեան, եւ չկարէ մարդ առնել ինչ ընդդէմ կամաց նորա :

Զինուոր որ խեղէ զանձն իւր՝ իրաւամբք պատուհասի, իբրեւ դասալիք որ բանակի, եւ մարդ որ անձնասպան լինիցի՝ դատապարտի իբրեւ դասալիք օրինաց Բարձրելոյն :

Վրիպակ կարծիքն զոր զՊատուոյ ունին բազումք ի մարդկանէ, պատճառք են զի նեռումն շնորհի համարակաբար այնոցիկ որք ի մէջ անձնասպանութեան եւ պատուոյ՝ զվերջինն ընտրեն :

Սակայն ներէ նոցա, քանզի պարտ է ներել եւ յանցաւորաց. այլ ներէ նոցա իբրեւ յանցաւորաց :

Տեսանին փախստականք հասեալք ի սնանկութիւն՝ որք անձնասպանս լինին առ ի զերծանել յամօթոյ :

Արդարեւ՝ զերծանել զերծանին ճոքս, այլ ի զգայութենէ անտի եւեթ եւ ոչ թէ ի բուն խակ յամօթոյն :

Երբ թշուառացեալ իցես, կեցցիր զի ցուցցես զթշուառութիւն քո. երբ անխոհեմ եղեալ իցես, կեցցիր դարձեալ՝ նախ քաւել զայն, եւ ապա դարման տանել նմին :

Յառնաս զկեանս քո՝ յորժամ ոչ եւս քո է այն, եւ դու չպարտիս այլ ինչ խորհել, բայց երբ ամբառնալ զաւերակն՝ զոր արարեալ ես արդէն :

Ոմանք անձնասպան լինին, փոխանակ զի կիրք նոցա ոչ յագեցան. Իւ արդարանայցէ մահ այնպիսի :

Այլք հրաժարին ի կենաց առ ձանձրութեան եւ խոնջութեան, եւ սոքա անարգագոյն են քան զամենեսեան :

Ո՛վ մարդ չուառական, որ ոչ սիրել գիտէ, եւ ոչ տանել :

Երբ սակաւք են որ փորձեալ իցեն հրա-

ժարել ի կենաց, այլ բազումք են որ տր-կանեն զանձն ի վտանգ առաւել ծանր պատճառաց :

Թեպէտ եւ բարոյականն ոչ դատապարտէ այլ դրուատէ եւս զարիութիւն, այլ դատապարտէ զյանդգնութիւն, մանաւանդ զի բազում այն է զի յանդգնութիւնն սնափառութիւն է կամ անմտութիւն :

Գնալ մինչեւ արկանել զանձն ի վտանգ առաւել ծանր պատճառաց, կամ թէ կամելով ցուցանել՝ թէ չունի ինքն երկիւղ, է անշուշտ գործել ինչ գործ չար :

Մեծամարտութիւնն որ լծորդէ զերկուսին կնիքս սպանութեան եւ անձնասպանութեան, հիմնեալ է ի վերայ այսր մանկական սնափառութեան :

Նոյն պատճառք որք արգելուն մարդոյ զանձնասպանութիւն, արգելուն նմա եւ նուաստանալ, եւ խեղել զանձն :

Քանզի պարտ է մարդոյ զգուշանալ յայնմ ամենայնէ որ նուաստացուցանէ զանձն իւր եւ արհամարհ առնէ հասարակաց, յամենայն բուռն զգածմանց, եւ ի վնասակար սովորութեանց, որք մաշեն զմարմին, ապշեցուցանեն զմիտս, եւ առնեն զնա այնպիսի ոք, զի որք տեսանիցեն՝ չհամարին զնա իմացական արարած, այլ դարձուցանեն ի նմանէ զաչս իւրեանց զարշանօք։

Նուաստանան մարդիկ կամաւորապէս յերից պատճառաց, յանհոգութենէ, ի տարապայման զուարճութեանց, եւ ի չափազանց խոհեմութենէ։

Ա. Յանհոգութենէ, յորժամ կորուսանեն զկարողութիւն իւրեանց առ պակասութեան կրքութեան, կամ յորժամ ոչ դարման տանիցին հիւանդութեան մարմնոյ կամ հոգւոյ։

Բ. Ի տարապայման զուարճութեանց,

յորժամ ապականինն զգայութիւնք իւ-
րեանց, կամ հոգին' հեշտութեամբք :

Գ. Ի չափազանց խոհեմութենէ, յոր-
ժամ նուազի կարողութիւն ինչ, զի մի
գուցէ ի կիր առցի այն յաւուր միում
ընդդէմ իսկ անձանց իւրեանց :

Թողից աստ զխեղկատակութենէ, որով
մարդիկ անհեդեդ կերպարանօք, այլան-
դակ շարժմամբ եւ անպարկեշտ բանիւք
վարին առաջի իշխանաց, ի զուարճա-
ցուցանել զնոսա եւ գտանել շնորհս ինչ
ի նոցանէ, նուաստացուցեալ զազնիւ
կնիք մարդկութեան :

Զինչ եւ իցէ պատճառն' որոյ վասն
նուազեցուցանէ մարդ զկարողութիւն իւր,
կամ այլայլէ զզօրութիւն իւր, յանցաւոր է
յաչս բարոյականին. ապա պարտ է այն-
պիսի խստութեամբ վարիլ ընդ առն որ զայն
գործիցէ, որպէս ընդ զինուորի որ խեղէ
զանձն, զի մի սպաս հարցէ տէրութեան:

Զմտաւ ած զհանգամանս մարդոյ, զըն-դարձակութիւն եւ զկարողութիւն մտաց նորա, զգորով եւ զազդեցութիւն սրտի նորա, զհաստատութիւն եւ զառաձգութիւն կամաց նորա, եւ տես՝ թէ նուաստացուցանել զնա, կամ միայն անփոյթ առնել զայսպիսի պարգեւօք, չիցէ սեղանակապտութիւն մեծ :

Ցամենայն պաշտամունս կենաց պատրաստին մարդիկ ուսմամբ եւ կրթութեամբ, ապա պարտիմք մեք վասն Աստուծոյ, վասն ընկերութեան, եւ վասն անձանց մերոց ջանալ բարւոք կատարել զարուեստն մարդկութեան, որում վիճակեալ եմք, այնպէս զի մի ինչ ի պիտանեաց, որ ի կատարումն պարտուց մերոց, կորիցէ ի մեզ անհոգութեամբ :

Եթէ տուեալ է մեզ Աստուած չափաւոր ինչ կարողութիւն, պարտք մեր անձկագոյն են. իսկ որք ընկալան քանքար մեծ,

պարտական են պահել եւ յարգել զայն յերջանկութիւն կամ ի յառաջադիմութիւն մարդկութեան ։

Գիտասցուք յարգել զայն ամենայն որ ի կարգի է, եւ սկսցուք ի յարգութենէ անձանց ուսանել զյարգութիւն ։

Խնդիր եւ վէճ է առ իմաստասէրս. ոմանք ի նոցանէ պարտս համարին մարդոյ ազատաբար կատարել զխորհուրդս իւր, այլք զհակառակն համարին, եւ սխալեն ։

Դիցուք նախ՝ թէ զոն պարտք անշուշտ, զոն եւ իրաւունք, եւ ապա ջանասցուք տեղեկանալ խսկութեան գոյութեանն, ընդարձակութեան եւ սահմանի իրաւանց ։

Ազատութիւնն սեպհական կնիք է մարդոյ, այն է որ զանազանէ զնա յամենայն ստեղծական էակաց, եւ առնէ զնա հրաշակերտ յարարածս ։

Մարդն ոչ կարէ հրաժարիլ յազատու-

թեՆէ իւրմէ, առանց նուաստանալոյ, եւ ոչ հարէ վնասել ազատութեան այլոյ, առանց մեղանչելոյ ընդդէմ պարտուց իւրոց :

Եթէ քաղաքական ընկերութիւնն արգելս ինչ դնէ մեզ, հարկաւոր է այն ի բարւոք պահպանութիւն ազատութեան, արգելու, զի մի այլափոխեսցի այն յանառակութենէ, եւ զի մի ծնանիցի զհարստահարութիւն զեղծմամբ եւ բռնաւորութեամբ, եւ այս այնչափ հաւաստի է, մինչ զի պահանջէ ի մենջ զզոհ մասնաւոր ազատութեանս, որոյ չիք ի կշիռ զալ ընդ հասարակացն ազատութեան :

Եթէ ազատութիւն գործելոյ՝ բնական իրաւունք են մարդոյ եւ քաղաքացւոյ, ապա պարտ է զի լիցի եւ ազատութիւն խորհելոյ. զի գործեմք մեք ըստ դատման մերում, եւ իշխել այնմ՝ է անուղղակի կապտել զմեզ ի կամաց մերոց :

Տիրապէս խօսելով, չիք ինչ որ կարող իցէ ազդել կամաց մարդոյ. անյաղթելի է այն, բայց կարող է ազդումն ինչ առնել յայն, կամ ի գործս նորա, կարէ առնել զնա անպիտան, խափանելով զեղանակ կի-րառութեան նորա. տկարացուցանէ այլայ-լելով զսկզբունս յորոց նայն առաջնորդի :

Այպս ազատութիւն խորհելոյ եւ ազա-տութիւն գործելոյ անբաժանելիք են ի մի-մեանց :

Անեղծ են երկոքին, եւ երկոքեան եւս սրբազանք :

Ազատութիւնն զոր ունիմք մեք այսպէս յիրաւանց բնութեան՝ է կանոնաւոր ազա-տութիւնն. բայց իւրաքանչիւրն յազա-տութեանց մերոց ունի զսեպհական իւր կանոն, զոր գտանեմք ի ներքս ի մեզ. վասն ազատութեան գործելոյ կանոն, է բարոյական օրէնքն, եւ վասն ազատու-թեան խորհելոյ՝ բանն :

## ԳԼՈՒԽ Գ.

### ՅԱՂԱԳՍ ԹԷ ՊԱՐՏԻ ԱՄԵՆԱՅՆ ՈՔ ՊԱՀՊԱՆԵԼ ՉԻՐԱՒՈՒՆՍ ԱՅԼՈՑ.

« Զամենայն զոր միանգամ կամիցիք թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս եւ դուք արարէք նոցա, զի այս իսկ են օրէնքն եւ մարգարէք : »

Երկուս պարտս ունի մարդ առ ընկերս իւր.

Զառնել նոցա չար, եւ առնել նոցա բարի :

Զառնել չար ընկերին. այսինքն չմեղանչել կենաց, բարույ, ազատութեան, պատուոյ, եւ ընչից նորա :

Հարց ամենայն ուրեք զբանն՝ զոր ոչինչ կանխակալ սովորութիւն այլայլեալ իցէ, եւ զխիղճն՝ զոր ոչ մի ինչ շահ եւ կիրք ապականեալ իցեն. պատասխանի առնի-

ցեն, թէ մարդն նուիրական ինչ է մարդոյ, եւ յարձակիլ ի վերայ կենաց նորա, ազատութեան, եւ սեպհական ընչից նորա, է կործանել զհիմն կարգին, եղծանել զբարոյական օրէնս, զպահպանիչս մարդկային սեռի, եւ գործել զմի ի գործոց, որ յամենայն դարս եւ առ ժողովուրդս ամենայն ընկալեալ է զսարսափելի անունս *եղեռն* ։

Բարբառ ինչ ահաւոր հնչէ առ մարդն արտաքուստ ամենայն ուրեք միշտ. եւ այլ բարբառ մի ի ներքուստ, եւ բարբառքս այսորիկ ասեն ցնա, թէ մի սպանաներ, մի գողանար, մի անպատիւ առներ զառաքինութիւն ամուսնոյն, եւ մի զպատկառանս օրիորդ կուսին, այլ եւ խորհուրդք սուրբ լիցին յայսոցիկ պղծութեանց ։ Որ հեղու զարիւն եղբօր իւրոյ անիծեալ է յերկրի եւ յերկինս ։ Անիծեալ եւ որ նենգութեամբ կամ բռնութեամբ

յափշտակէ զազատութիւն եղբօր իւրոյ, կամ զօրինաւոր ստացուածս նորա, եւ խռովս արկանէ ի մէջ ընտանեաց, յորմէ ծագին նախատինք, անմիաբանութիւն, տագնապ սրտի, ատելութիւն եւ քան-դումն :

Պարտ է հալածել ի սրտէ զցանկութիւն եւ զչար խորհուրդս. քանզի հաւանել չար խորհրդոց եւ ցանկութեան, լրումն է չա-րին : Են խօսք որ սպանանեն, վասն որոյ պարտ է զգուշանալ լեզուի, եւ մի լիցի այն երբեք աղտեղեալ ստութեամբ եւ զրպարտութեամբ :

Նախանձ, բարկութիւն, քինախնդրու-թիւն, եւ ատելութիւն մաշեն զհոգի, եւ հոգի վարակեալ այսպէս, միշտ յերկուղս է ի ծնանել զսպանութիւն :

Օրէնք պատժեն զնոսա որք հեստեն պատուիրանին, եւ կարծիք հասարակաց վատահամբաւս առնեն զնոսա :

Բարոյականին մնայ նշանակել զպատուհրանազանցութիւնս, զորս օրէնք չկարեն ըմբռնել, եւ ընկերութիւնն ծածկէ՛ յանցաւոր իմն ներողամտութեամբ :

Նշանակեսցուք աստ զծանրագոյնսն :

Բարոյական խիղճն ոչ ստգտանէ զմարդասպանութիւն ի դէպս օրինաւոր պաշտպանութեան անձին :

Յորժամ կեանք իմ ընդ անիրաւ ասպատակելոյ իցէ, ունիմ ես իրաւունս պաշտպանելոյ այնմ, եւ արկանելոյ ի վտանգ զկեանս յարձակողին ի վերայ իմ, եւ ես ոչ մեղանչեմ իրաւանց յորժամ զայն գործիցեմ : Բայց սակայն յանցանեմ ընդդէմ բարոյականին, եթէ կարացեալ ընդդէմ կալ յարձակման, առանց սպանանելոյ զթշնամին իմ, դնիցեմ զանձն ի վտանգի սպանանելոյ զնա, կամ թէ վնասն զոր կամ՚եցայ ես ի բաց վանել՚ ոչ էր այնչափ

ծանր, զի ցուցից եւ արդարացուցից զպատանութիւն առն միոյ :

Ապա յամենայն նուագս յորս մարդասպանութիւնն ոչ է ի հարկէ պաշտպանութեան անձին՝ լիցի յանցաւոր :

Ի գիրս վիպասանութեանց պարսաւեն մարդիկ զբացատրութիւնս ինչ որք թուին նոցա կարի իմն կուտակմունք բանից. մինչդեռ հիւսուածն իսկ կատակերգութեան՝ է շատագովութիւն ինչ շնութեան, եւ է յայտնի ոճիր ընդդէմ բարուց :

Անհնարին է հաճիլ ընդ այսպիսի տեսարանս եւ թաքուցանել զատարատ անձին յերեսաց մոլութեան :

Եթէ իմաստասէր որ ի ծանրախօս գիրս ինչ, զոր սակաւք ոմանք ընթեռնուն, արասցէ շատագովութիւն ինչ շնութեան. ձգի անշուշտ յատեանս յանդիմանութեան եւ դատի իրաւամբք :

Այլ նոյն շատագովութիւն յանդիման

արարեալ ի տեսարանի առաջի հազարաւոր հանդիսականաց, չշարժէ բնաւ զխիղճ նոցա :

Այլ մանաւանդ չատագովութիւնն այն յարգոյ յոյժ գտանի, եւ պարկեշտ կանայք ճեպին զնան լսել զայն. ապա պարկեշտ են նոքա յառերեւոյթս :

Առաջին աստիճան մոլութեան, է լինել այնր սիրելի յաչս մարդկան :

Երիտասարդ որ զպատմէ այլոց, թէ ունի ինքն իբրեւ տարփաւոր զկին որ ամուսնացեալ, լսեն նոքա զպատմութիւնն զայն զուարճութեամբ. եւ թերեւս չկորուսանէ նա ինչ ի մեծարանաց յաչս նոցա, սակս պարտաւորելոյն զկին որ եղծանել զհանդիսաւորագոյնն յամենայն երդմունս, եւ արկանել ի վտանգ զապագայ վիճակ դստեր իւրոյ եւ զպատիւ ընտանեացն :

Չիցէ այս ընդդէմ բարոյականութեան :

Արհամարհեն յոյժ ամենեքեան զզրպար-

տուքիւն եւ զզրպարտողն միանգամայն. սակայն ընդունին միշտ զչարաւեր կասկածանս ընդդէմ պատուաւոր մարդկան. երկրորդէն զայն հանդերձ համուքեամբ, եւ զանձինս առ արդարս եւ անստգիւտս ունին, միայն թէ զգուշութեամբ իմն յաւելուն զայս ոճ բանից. « Ես ոչ կարծեմ, չգիտեմ զայդ ինձէն, այլ զհամբաւն որ ընթանայ' երկրորդեմ : »

Եւ նոյն մարդիկ որ գործակից լինին զողանալ զպատիւ ընկերի իւրեանց, պարտապանս համարին զանձինս, երէ առնէին նմա դեռարի միոյ զեան :

Իսկ արդ' մի՞թէ ինչք առաւե՛լ ինչ արժիցեն քան զհամբաւն :

Ցորժամ յանցաւոր որք ի վեր երեւիցի կամին օրենք զի մինչչեւ դատապարտեալ իցէ նա, յռր եւ իցէ պատիժ, հարցանիցի վկայիւք եւ պաշտպանութեամբ փաստաբանի միոյ, իսկ ընտիր ընտիրն յընկե-

բուրեանց ոչ են այնպէս երկիւղածք ։ Գատապարտեն անդ զայլս որք եւս եւ վասն թերեւազունից իրաց ճշմարիտս կարծեցեալ ։

Այսօրիկ մոլութիւնք են ընկերութեան, զորս աշխարհ ամենայն արդարացուցանէ, վասն զի չիք որ ի նոցանէ անմեղ ։

Ոչ ժողովին անդ խօսել զաիրելի մարդոյ միոյ զրպարտելոյ, այլ պարզ կեղծաւորութիւն, եւ ոչ զոյ անդ զրոյց իմաստալից որ չարացնէ ինչ ումեք վնաս ։

Քան զամենայն ազատութիւնս յարգոյ եւ սուրբ է ազատութիւն խղճի, եւ այս իսկ է զոր նուազ քան զայլս գիտեմք յարգել ։

Զամենայն տեղիս ուր աստուածպաշտութիւն կայցէ, երէ յօրինաց, եւ երէ ի բազմութենէ պատուիրի այս, եւ ճշմարիտ է, չիք կրօն որ նեղողամիտ յայսմ լինիցի, որպէս տեսաւ եւ տեսանի յամենայն տեղիս ։

Ի հասարակաց գնացից այս փոփոխակի աններողութիւն անցեալ է ի գնացս մատնաւորաց. մին քարոզէ զամբարշտութիւն, միւսն զկոյր նախանձաւորութիւն կրօնի, եւ մոռացան երկոքին կողմանք զայս բացայայտ օրէնս բարոյական խղճի, թէ « Մի՛ մեղանչէք ազատութեան այլոց : » Յորմէ իմաստասիրութիւնն պատեհ առեալ՝ եւ յօրէնս գրեաց զազատութիւն խղճի, այլ ոչ ժամանեաց տակաւին մուծանել զայն ի բարս մարդկան :

Ի զուր առաքինի կարծի մարդ, յորժամ ունի միայն իրաւունս անելոյ յաճախ զառածս զայս հասարակաց, թէ « Զիք իմ երբէք արարեալ ումեք անիրաւութիւն : »

Բարոյական օրէնք ոչ միայն պատուիրեն մեզ չվնասել ընկերաց մերոց, այլ եւ պարտս ի վերայ դնեն՝ բարիս առնել նոցա. չէ բաւական չարանանել զնոսա, այլ եւ պարտ է օգնել նոցա ի կեանս. ոչ

միայն յարգել զինչս նոցա, այլ եւ պարտ է հաղորդս եւս առնել զնոսա ընչից մերոց. միով բանիւ, պարտիմք նոցա միանգամայն զարդարութիւն եւ զօգնութիւն :

Աւազակ որ յարձակի ի վերայ ուրուք ի ճանապարհի, ես միայն եմ վկայ յանցանացն, եւ ոչ ի մէջ անկեալ՝ խափանեմ զայն, իցեմ ես անձամբ յաւազակութեանն յայնմիկ :

Խօսին առաջի իմ զրպարտութիւն ինչ, գիտեմ ես զճշմարիտն, եւ լռեմ զայն. չիցեմ ես մեղսակից զրպարտողին :

Որ յանկարծակս խաբէ զմարդիկ, բըշնամի է Աստուծոյ, եւ որ կարող է յաւսաւորել զնոսա, եւ առ հանգստութեան, կամ առ զուարճութեան փակէ ընդդէմ նոցա զդուռն գիտութեան իւրոյ, կատարեալ իցէ զընթացս իւր յաշխարհի :

Մուրացիկն պարտի մեռանել ի քաղցոյ առ դրան հացագործին, առանց արկա-

նեյոյ զձեռն իւր ի հացն որ չէ նորա. ՚ահա իրաւունք սեպհականութեան՚ յահագին ի խստութեան անդ իւրում :

Գրաւոր օրէնք հաստատեն զայն ըստ այսմ կանոնի, եւ ոչ բռնադատեն զայր մեծատուն տալ ինչ աղքատին որ մեռանի :

Բայց բարոյական օրէնք հարկ ի վերայ դնեն նորա առ այն իշխանաբար : Երէ վայելէ մեծատունն յաւելորդ ինչս իւր յանդիմանն այնր հոգեվարին, պատասխանատու է մահուան նորին :

Քրիստոնէական բարոյականն առէ սքանչելապէս, թէ մեծատունք չեն ինչ այլ բայց գանձապետք աղքատաց : Այս բան՚ աստուածային, բաւական լինէր յերջանկութիւն մարդկան, երէ քանդակեալ էր ի սիրտս ամենեցուն :

Ցորժամ զմտաւ ածիցէ ոք զհանգամանս մարդոյ, զտեղին յորում ստեղծաւ, զկո-

բողութիւնս որք տուեալ են նմա, զգանձսն զորս ընկալաւ, չկարէ կարծել, թէ այս ամենայն կարողութիւնք, այս ամենայն իմացականութիւն իցեն ի պէտս նորա միայն որ զնոսին ժառանգէ, եւ թէ Աստուած զայս միայն խնդրէ ի մարդոյ, չլինել անձնասպան, եւ չհալածել զայլս: Այլ ընդհակառակ, կամեցաւ Աստուած յորչնչէ ստեղծանել զմարդ եւ առնել զնա զործակից զերագոյն գործոյ իւրոյ, պատուիրէ նմա սիրել զընկերս իւր եւ օգնել նոցա, եւ նուիրել զկարողութիւն իւր եւ զհանճար, եւ զամենայն զոր ինչ ունի, ի պաշտպանել եւ ի լուսաւորել զնոսա, եւ բարիս առնել նոցա:

Ցորժամ կոչեսցէ զմեզ Աստուած առ ինքն, եւ ասասցուք նմա միայն, թէ « Ես ոչ վնասեցի ումեք » Բնաւ ընդէր իսկ կոչիցիմք ի նմանէ:

Եթէ այն է առաքինութիւն մեծ. ապա

առ ինչ խորհուրդն եւ կամք, բայց եթէ լինել նոցին անպիտան :

Վասն էր այս սիրտ բոցակեզ, եթէ իմաստութիւնն ներէ զի շիջանիցի բոր-բոք նորին :

Վասն էր արք հանճարեղք, եթէ թոյլ տայ Աստուած զի լռեսցէ այս հանճար :

Փոխանակ սահմանելոյ զմեզ առ կրաւո-րական ընթացս ինչ կենաց, չափել է նա զազատութիւնս մեր ընդ կարողութեան մերում, զարժանաւորութիւն մեր ըստ պարտուց մերոց :

Կեալն է ներգործել, պատերազմել ի կայի քուրում զպատերազմն կենաց, զօրավար կամ զինուոր' չէ փոյթ, միայն թէ քաջութեամբ մարտիցէ :

Կարողութիւն շատ կամ սակաւ, զոր բաժանեաց եւ մեզ Աստուած, է արդա-րեւ պարգեւ ինչ աստուածային, ոչ պար-տիմք թողուլ զի կորիցէ. եւ ոչ ապա-

կանել զայն յանարժան կիրառութիւնս :

Որպէս են մարդիկ որք համարին զանձինս իւրեանց բաւական առաքինիս, զի չառնեն ումեք չարիս. եւ խօսին համոզմամբ զուղղութենէ եւ զպատուոյ իւրեանց, մինչդեռ թողուն մեկուսի զընկերս իւրեանց տառապել եւ մեռանել, առանց կարկառելոյ ի նոսա ձեռն. են եւ այլք որք առ պերճութեան, առ յօժարութեան, զուգէ առ բարեսրտութեան, սիրեն տալ եւ գործել, եւ առնեն առատաձեռն ինչ կիրառութիւն ընչից ոչ բարւոք ստացելոց :

Պարտ է մարդոյ ի կարգ մտանել, լնուլ նախ զխիստ սակն, զոր դնէ ի վերայ նորին արդարութիւն, եւ ապա ունել իրաւունս կատարելոյ զյօժարութիւնն սրտին :

Թէպէտ եւ պարտք ինչ են այս, բայց մինչչեւ տուեալ ինչ՝ պարտ է ստանալ զայն օրինօք :

Արդարութիւնն է բացարձակ եւ խիստ, ոչ լինի ընդ նմա իրաւախոհութիւն. զամենայն զոր պատուիրէ՛ պարտ է իսկոյն եւ ըստ օրինաց կատարել, առանց յետամիտ խորհրդոյ, զի այս ինչ արդար է, եւ ոչ զի շահեկան է, կամ փառաւոր:

Պարտ է լռել սրտին, յորժամ դժբաղդութեամբ ոչ իցէ միաբան ընդ արդարութեան:

Պարտ է հպատակել, նուաճել զայն ընդ լծով պարտուց:

Կանոնք արդարութեան ոչ են իբրեւ զկանոնս բանաստեղծութեան արուեստի, որոյ հանճարն ազատ է. գրեալ են այնք ձեռամբ իսկ Աստուծոյ, եւ որ հեստէ նոցին, եղծանէ զօրէնս Աստուծոյ, եւ ապականէ յանձին զսրբազան կնիք մարդկութեան:

Երէ զոն բացառութիւնք յարդարութեանն, ոչ եւս է արդարութիւնն:

Եթէ զոն երկու բարոյականք, ոչ զոյ բարոյական :

Մարդիկ սիրեն բնականաբար զայն ամենայն որ ի սրտէ յառաջ զայ, զայն ամենայն որ մեծ է, զայն ամենայն որ զաչս խտտղէ, եւ զայն ամենայն որ նոր ինչ է :

Գործ ինչ դիւցազնական, կամ պարզ առատաձեռնութեան, շարժէ զնոսա եւ զրգռէ յանսովոր իմն շարժումն հոգւոյ : Տեսանեն նորա զգործն, այլ ոչ տեսանեն զարդարութիւնն որ ի սիրտ արդարոյն :

Առնուլ առ ի տալ, եւ լինել միշտ պատրաստ ի պաշտպանել աղքատին, ի վրէժ խնդրել անիրաւութեանց որ առ նա, ի թեթեւացուցանել զվիշտս նորա. ապստամբիլ ընդդէմ բանին, բայց օրինաւոր եւ ազատամիտ սրտիւ՝ զայս ամենայն եւս չէ պարտ մոռանալ, եւ ոչ անցուցանել զկեանս իբրեւ զյաղթական :

Զօրութիւնն միայն եւ յաջողութիւն, առանց առատաձեռնութեան, բաւական են երբեմն կուրացուցանել զխուժանն, եւ առնել մտացածին խորհրդածութիւնս ի պատմութեան :

Ո՞վ է մարդ որ ժխտիցէ Աղեքսանդրի անիրաւ աշխարհակալի Ասիոյ զանունն Մեծ :

Ո՞վ ոչ զարմանայ ընդ Կեսար եւ ընդ Օգոստոս : Օգոստոս ներեաց Կիննայի, թերեւս խորհրդով. զի մոռացեալ լիցին այլք : Ոչինչ խղճեաց նա ի միում եւեթ նուագի ի մահ տալ բիւրս երկուս ի մարդկանէ. բայց յայլում նուագի՝ խնայեաց ի նա միայն առ փառասիրութեան. զի ի գիր անցուցէ բանաստեղծ որ զգրութիւն Օգոստոսի : Ահա դատաստան մարդկան, ահա բազմութիւն քուէից. եւ ահա քարոյականութիւն յաջողութեան :

Զինչ ստնանիցեն այս ամենայն մարդ-

կային յիմարութիւնք ճշմարտութեան եւ արդարութեան :

Ոչ զոյ բնաւ բազմութիւն քուեից ընդդէմ խղճի մտաց :

Եթէ զոյ ի մէջ քո եւ իրաց մեծաց մահ, խիզախեա ընդդէմ մահու, եւ լէր դիւցազն. եւ եթէ զոյ պատուէր աստուածային օրինաց, դադարեա եւ մեռիր անձանօթ եւ առաքինի :



## ԳԼՈՒԽ Դ.

### ՅԱՂԱԳՍ ԳԱՐՏՈՒՑ ՄԱՐԴՈՅ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ.

Սիրեսցես զՏէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ, եւ յամենայն անձնէ քումմէ եւ յամենայն մտաց քոց, այս է մեծն եւ առաջին պատուիրան. (Մատ. ԻԲ, 33) :

Ի լրութենէ պարտուց բղխին կեանք եւ ճշմարտութիւն, մշտնջենաւոր հիմունք պարտուց, յորոց կազմի կրօնն, զոր կապակցութեան ոչ միայն մարդկան ի մէջ նոցա, այլ եւ ամենայն արարածոց :

Ապա ուրանալ զկրօնն, է ուրանալ զպարտս. եւ քանզի զոն ճշմարիտ պարտք, ապա զոյ ճշմարիտ կրօն . եւ քանզի պարտք ըստ էութեան իւրեանց անայլայլելի են եւ հանրական. նոյնպէս եւ

կրօնն անայլայլելի եւ հանրական ինչ է :

Առ ի չնոյլ զպարտս, պարտ է հաստատալ ճշմարտութեան, յոր հիմնեալ են պարտք :

Ուստի մարդկային ազգ հաւատայ զօրութեամբ իսկ իւրումն բնութեան նախնաքար եւ հարկաւ :

Հաւատայ մարդկային ազգ ի մի գերազոյն պատճառ, արարիչ, անհուն, որոյ անունն Աստուած, եւ այս ամենասուրբ անուն Հօր հասարակաց գտանի յամենայն մարդկային լեզուս :

Հաւատայ եւ ի բարերարն Նախախնամութիւն որ վարէ զամենայն ինչ ըստ օրինաց յաւիտենական իմաստութեան եւ սիրոյ առ վախճան ինչ արժանի Արարչի :

Հաւատայ թէ այս Նախախնամութիւն հսկէ մասնաւորաբար ի վերայ մարդոյ, լուսաւորէ զնա, եւ ուսուցանէ, եւ առաջնորդէ նմա ի ճանապարհ յոր պարտի նա

« Եղերուք դուք կատարեալք որպէս եւ Հայրն ձեր երկնաւոր կատարեալ է » :

Զանի մարդոյ ունին նպատակ ինչ, եւ ճանաչէ նա զնպատակն զայն, եւ զկեանս իւր իբրեւ զկեանս մարդկային ազգի, որ է մշտնջենաւոր վերելք առ մնացական սկիզբն ամենայն էակաց, մշտնջենաւոր անուն ինչ յԱստուած :

Չիք միաւորութիւն կարելի առանց սիրոյ, քանզի սէրն է ազդեցութիւն ինչ որ կատարէ զմիաւորութիւն :

Ապա պարտ է սիրել զՏէր Աստուած յամենայն մտաց, յամենայն անձնէ, եւ յամենայն զօրութենէ. այս է առա առաջին եւ մեծագոյն պատուիրան :

Որ ոչ սիրէ զԱստուած ի վեր քան զամենայն ինչ, զանձն իւր սիրէ. քանզի չունի եւ չկարէ ունել այլ նպատակ, այլ սահման՝ եթէ ոչ զանձն :

Սիրել զԱստուած՝ է ցանկալ նմա, եւ

աղօթք իղձք են սրտի, շարժումն որ մղէ զմարդ առ այն զոր սիրէ, որում անձկայ, առ որ բողոք հարկանէ:

Սիրել զԱստուած՝ է նուիրել նմա զանձն, ընկղմել ի նա, կամել զայնպիսի եւ զայն ինչ միայն զոր եւ նայն կամի, անբերի նուիրմամբ սեպհական կամաց մերոց յայն ինչ իբրեւ որ չիցեն համաձայն կամաց նորա, եւ այս իսկ է զոհ մեր, եւ այս գործ, զի ծանուցեալ զիմաստութիւն, զարդարութիւն, եւ զգերագոյն բարութիւն նորա՝ խոստովանիմք բոլորովին, թէ մեք ոչինչ եմք, եւ նա է որ յօրինէ զէութիւն պաշտամանն զոր պարտին նմա իմացական արարածք իւր, պաշտօն մատուցանելի հոգւով եւ ճշմարտութեամբ:

Արդ՝ որճվ յեղանակաւ պարտ իցէ մարդոյ մեծարել եւ պաշտել զԱստուած:

Գլխաւոր յեղանակն է հնազանդ լինել բարոյական օրինաց:

Աստուած է զերագոյն բարի, եւ ամենայն բարի որ կայցէ յաշխարհի՝ յԱստուծոյ արարեալ է :

Հակառակել բարւոյն, է ընդդէմ կռուել Աստուծոյ, անհնազանդ լինել կամաց նորա. եւ եղծանել բոլոր զկարողութիւնն զոր ետ մեզ ի գործել զբարիս :

Չիք յեղանակ պաշտաման եւ յարգանաց որ կարող իցէ հաճոյ լինել Աստուծոյ, յորժամ անմաքուր իցէ սիրտն որ աղօթէ :

Այս ճշմարտութիւն այնպէս յայտնի է, զի յորժամ խառնէ ոք ընդ անիրաւութիւնս կենաց իւրոց զգործս կրօնի, անհաւատքն իսկ զգան, զի յաւելու նա զարհամարհանս անձին :

Թուի ինձ այնպէս եթէ սովին այսու արհամարհի կեղծաւորութեամբ կամի այնպիսին զԱստուած եւս գործակից յանցանաց իւրոց առնել :

Ոչ որ հաւատասցէ երբէք թէ անկեղծ

իցէ կրօնական ինչ զգացումն՝ յորժամ ոչ ազդիցէ առաքինին ինչ զնացս :

Ո՞վ իցէ որ կարող իցէ սիրել զԱստուած եւ ոչ յարգել ի նմա զկատարելագոյնն ի գործս ձեռաց նորա :

Ո՞րպէս մարթ իցէ սիրել զԱստուած, եւ ոչ սիրել զարդարութիւն :

Որո՞վ երեսօք համարձակիցի ոք աղօթել, յորժամ առեալ իցէ ի վերայ սնոտեաց զամենասուրբ անունն, զոր յօգնութիւն յաղօթս իւր կոչէ :

Աղօթք առն որ երդնուցուն սուտ՝ անէծք քնչ են ընդդէմ անձին իւրում :

Առաջին պաշտօն հաճոյ Աստուծոյ, է լինելն ուղիղ, արդար, բարեբար, կալ հաւատարիմ ի խօսս իւր, նուիրել առանց երկբայութեան եւ քրթմնջանաց զշահ իւր պարտուց անձին, չնուաստացուցանել վատութեամբ կամ անարգութեամբ զազնիւ կնիք մարդկութեան, զգուշանալ անձկու-

քեամբ խղճի յամենայն դէպս ի վնասելոյ իրաւանց այլոց, նա մանաւանդ խնդրել զպատեհ նուիրելոյ զանձն յերջանկութիւն ընկերաց ունել սիրտ գթած առ ամենայն արարածս Աստուծոյ, եւ թողուլ զկնի իւր օրինակս առաքինութեան, եւ յիշատակ անմահական:

Բարեպաշտութիւնն տայ մեզ նոր առիթ սիրելոյ զբարին եւ ի գործ դնելոյ զայն, եւ է յեղանակ ինչ դիւրագործ առնելոյ զբարին:

Ամենայն իղձք առն բարեպաշտի ուղացեալք առ Աստուած միանգամայն իղձք են առ առաքինութիւն, եւ չէ մարթ կատարել զայնս միայն գործով պաշտաման, առանց ի յուշածելոյ եւ զկարօտութիւն հնազանդելոյ միշտ պարտուց, առ ի լինել միշտ արժանի պաշտելոյ զԱստուած:

Բազում անգամ ասեն մարդիկ « Բա՛րձ

յինէն տէր զվտանգս գայս, արմ ինձ տէր շահել զդատս գայս : »

Այլ չեն այս աղօթք անձին բարեպաշտի, եւ ոչ այսպիսի աղօթիւք կարեմք մեք մեծարել զԱստուած :

Խնդրեսցուք յԱստուծոյ ոչ զլաշողութիւն, կամ զինչս, ոչ զճարակ կրից, այլ զառաքինութիւն որ առնէ զմեզ նմին արժանիս:

Խնդրեսցուք ի նմանէ տանել թշուառութեան, համաձայնութեամբ հանդերձ կամաց նորա, կամ զերջանկութիւն, հանդերձ չափաւորութեամբ :

Աղօթք մեր եղիցին ներգործութիւն ինչ սիրոյ, համաձայնութիւն ընդ կամացն Աստուծոյ, եւ ապաւինութիւն ի նա, կամ թէ այսպէս ասասցուք ցնա . « Տէր դու գիտես զայն որ օգտակարագոյն է ինձ : Տուր ինձ զայն ինչ ընդ որ դու հաճիս, այնչափ' որչափ կամիս, եւ ի ժամանակի , յորում եւ կամիցիս : »

Աղօթել առ Աստուած, է զմտաւ ածել զկատարելութիւն նորա, եւ զպակասութիւն մեր. հնազանդել կամաց նորա, ապաւինիլ ի նախախնամութիւն նորա, միանալ ընդ նմա կաթոգին սիրով, եւ յառաջադրել կեալ որպէս անկ է արարածոյ, զոր ի պատկեր իւր հաստեաց:

Աղօթք հաստատեն զհաւատս, զյարգութիւն, զառաքինութիւն, եւ դնեն զմարդ յանդիման Աստուծոյ:

Աղօթք սրբեն զմարդ եւ զօրացուցանեն:

Սովորութիւն աղօթից՝ է մտերիմ եւ յաճախ տուր եւ առ ընդ Աստուծոյ.

Աղօթք ազնուացուցանեն զզգածմունս մեր, եւ բեղմնաւոր զսիրտ մեր առնեն:

Անկարօտ իսկ է Աստուած աղօթից մերոց, այլ մեք արարածք նորին կարօտ եմք աղօթելոյ առ նա եւ պաշտելոյ զնա:

## ԳԼՈՒԽ Ե.

### ՅԱՂԱԳՍ ՊԱՐՏՈՒՑ ՄԱՐԴՈՅ ԱՌ ԸՆԿԵՐՆ.

Երկրորդն պատուիրանն ելանէ յառաջնոյ անտի, եւ նման է նմին.

« Սիրեսցես զընկեր քո իբրեւ զանձն քո : »

Որ ոչ սիրէ զընկեր իւր իբրեւ զանձն իւր, ոչ սիրէ նա զԱստուած :

Սէր ընկերին ո՞չ ապաքէն նուիրումն եւ զոհ է մարդոյ, կամաւոր զոհ, լի անզատում խնդութեամբ. քանզի կեայ սիրողն ի նմա զոր սիրէն, եւ այս փոխադրութիւն կենաց, որ հասարակաց առնէ զամենայն նեղութիւնս եւ զամենայն բարիս, ընդարձակէ զզգայութիւնս մեր, եւ առնէ զամե-

նայն մարդիկ իբրեւ զմի մարդ, աստուածացուցեալ իմն զնոսա միաւորութեամբն իւրով:

Եւ որպէս զի այս միաւորութիւն լրասցի, Աստուած ինքնին օգնէ մարդոյ եւ տայ նմա յիւրմէն այնչափ ինչ առատութեամբ, այսինքն, զկարողութիւն, զլուսաւորութիւն, եւ զսէր. քանզի առանց Աստուծոյ չկարէ մարդն եւ ոչ ինչ:

Որ միայն հրաժարեալ իցէ ի չարէն, եւ ոչ արարեալ ընկերի իւրում չար ինչ, եւ ոչ բարի, հաստուցեալ իցէ նմա ըզպարտս իւր, եւ կատարեալ իցէ առաջի Աստուծոյ:

Հայրն երկնաւոր չիցէ պատուիրեալ մեզ բարձրագոյն եւ բեղմնաւորագոյն առաքինութիւնս:

Տեսանի մարդ որ ողորմելի անկեալ յանկեան ճանապարհի իպակասութենէ պիտոյից, կամ յարկածէ իմեքէ ի վերայ հասելոյ:

Այր ոմն հայեցեալ ի նա՛ ցաւի եւ անցանէ, ասելով. « Ե՞ս ինչ պատճառ իցեմ լինելոյ դորա յայսմ վիճակի, եւ ո՞ յանձնեալ իցէ ինձ զնա. ամենայն որ զանձն իւր հոգասցի : »

Ա՛յլ ոմն նոյնպէս հայի ի նա եւ կարեկից եղեալ նմա մատչի առ նա եւ առնու զնա ի գիրկս իւր, ածէ ի տուն իւր, դնէ յանկողնի իւրում, հսկէ ի վերայ նորա եւ խնամէ զնա իբրեւ զեղբայր՝ որ հոգայ զեղբօրէն իւրմէ, եւ բարեկամ զբարեկամէ :

Արդ՝ յերկուց արանցս յայսցանէ ո՞րն էլից ճշմարտապէս զպարտս իւր :

Չարիք գտցին միշտ ի վերայ երկրի, այլ զչարիս զայսոսիկ պարտ է միշտ թեթեւացուցանել :

Եւ զի՞նչ լինիցի առանց այսր մարդկայինս ընկերութիւն. զի՞նչ լինիցի աշխարհ :

Զինչ լիցին նոքա, որոց հիւանդութիւն, աղքատութիւն, միայնութիւն, հասակ, միամտութիւն, եւ տգիտութիւն տիրեալ իցեն բոլորովին. մատնին նոքա իբրեւ որս դիւրին ի ծուղակս չարին:

Որ տայ ումեք ի դէպ ժամու խորհուրդ ինչ բարի, ազդարարութիւն իմաստուն, եւ ուսումն ինչ օգտակար. տայ աւելի ինչ քան թէ տայր նմա ոսկի բազում:

Ապա պարտ է օգնել այլոց ի պահպանել եւ ի կատարելագործել զկեանս նոցա, զազատութիւն եւ զստացուածս նոցա:

Այս երկու պատուիրանք բովանդակեն համառօտիւ զպարտս արդարութեան, եւ զսիրոյ, զընկերսիրութեան:

Մանրամասն գիտելիք զիրացս անբաւք են. քանզի բովանդակեն զամենայն մտածութիւնս, զամենայն զզացմունս եւ զամենայն գործս մարդոյ, եւ ի մի միայն պատուիրան ամփոփի համառօտիւ աս-

տուածային պատուիրանն սիրոյ ողջոյն.
« Սիրեսջիր զմիմեանս. » եւ արասջիր
այլում, զոր կամիր թէ արասցի ձեզ.
քանզի եւ դուք չկամիք այլ ինչ, եթէ ոչ
զարդարն եւ զբարին :

Սիրեսջիք, ասէ, Գերազոյն Տերն, եւ
լնուցուք անբերի զօրէնս :

Ոչ է պարտ շփոթել երբէք զկրօնն, որ
ըստ ինքեան մի է եւ անփոփոխ, ընդ զա-
նազան արտաքին ձեւոց զոր զգենու :

Ձեւք անկատարք եւ անհաստատք
հնանան եւ անցանեն, գործք մարդոյ
մեռանին իբրեւ զնա. ժամանակն մաշէ
զպատրուակն աստուածային սկզբանց,
այլ ոչ մաշէ բնաւ զսկզբունսն աստուա-
ծայինս :

Յորժամ մարմին մարդոյն լուծանի եւ
դառնայ ի հող, ձեւանայ անտի նորոգ
իմն կատարելագոյն մարմին, որոյ բող-
բոջն յառաջնում մարմնի անդ էր :

Ծնեալ եմք մեք ի քրիստոնէական հաւատս, զոհացարուք յոյժ զԱստուծոյ: Կամ չէ ճշմարիտ կրօն այն որ միաւորէ զմարդիկ ընդ միմեանս եւ ընդ յաւիտենական Արարչին, կամ՝ Քրիստոնէութիւնն, կրօն սիրոյ, եղբայրակցութեան, եւ հաւասարութեան. (յորմէ ծագին Պարտք եւ Իրաւունք') է ճշմարիտ կրօն :

Պարտ է համեմատել զազգ քրիստոնէից ընդ այլս յազգաց, եւ տեսանել որչափ ինչ պարտի երկնաբերս այս կրօնից ազգ մարդկան. սովաւ ազատեցաւ ի գերութենէ եւ ի ծառայութենէ. սովաւ կատարելագործեցաւ բարոյական զգացումն նորին, եւ ազդեցութիւն այնր կատարելութեան ի վերայ բարուց եւ օրինաց եւս քան զեւս զօրացաւ. սովաւ հաստատեցան մարդասիրութիւն եւ արդարութիւն որ յառաջն անծանօթք իմն էին, սովաւ տիրապետեաց մարդ ի վերայ բնութեան, եւ քաղեաց

զպտուղս զիտութեան եւ արուեստից, սովաւ անեաց բարեկեցութիւն հասարակաց եւ մասնաւորաց, միով բանիւ' սովաւ յօրինեցան բովանդակ բարիք որք բարձրացուցանեն զքաղաքականութիւն մեր զեր ի վերոյ քան զնին եւ զնոր քաղաքականութիւնն ժողովրդոց, որոց չեղեւ եւ չէ տակաւին ծագեալ լոյսն քրիստոնէութեան:

Ընդ այսոսիկ անթիւ բարիս խառնեալ են անշուշտ եւ չարիք բազում. այլ բարիքն զան ի քրիստոնէութենէ, եւ անտի հոսին ուղղակի. իսկ չարիքն զան յայնցանէ որք թիւրեալ են զվարդապետութիւնն Քրիստոսի, կամ լուծեալ են զսուրբ պատուիրանս նորա, եւս եւ յանհիրաժեշտ անկատարութենէ արտաքին ձեւոց որ գործք են մարդկան, եւ կարօտութեան ժամանակաց:

Ինձ թուի' թէ արտաքնայարդար ձեւոցն

քրիստոնէութեան անկարգութիւնք մերձ են ի վախճան, եւ քրիստոնէութիւնն բաղեալ յաճախ ընդ նիւթական ծածկութիւ, իբրեւ ընդ պատանօք, երեւեսցի ի պայծառութեան կենաց իւրոց եւ ի մշտնջենաւոր առուգութեան։

Բաժանեսցի անտի մանկանացու գործն խառնեալ ընդ այն, այսինքն, ընդ առաջին եւ ընդ վերջին օրենս մարդկութեան. քանզի բաց յայնմանէ չիք ինչ զոր կարիցէ Աստուած տալ իբրեւ սահման մարդոյ, զի եւ ոչ մյլ ճանապարհ զոյ գնալոյ առ Աստուած, եւ ոչ այլ ինչ յեղանակ միանալոյ ընդ նմա, բաց ի սիրոյ. քանզի մեծ պատուիրանն այն սիրոյ ոչ սպառեսցի բնաւ, ոչ ի վերայ երկրի, ուր յամենայն անհատից, յընտանեաց, եւ ի ժողովրդոց, պարտի կազմել մի միայն միութիւն մարդկային ազգի, եւ ոչ յերկինս, ուր պարտի սիրով լրանալ միաւո-

րութիւնն եւս քան զեւս կատարեալ արարածոց եւ Արարչին :

Ցայնժամ կատարեսցի եւ այն զոր ասեր Քրիստոս, թէ

« Եկայք առ իս ամենայն վաստակեալք եւ բեռնաւորք եւ ես հանգուցից զձեզ : »

Այժմ ընթացուք մեք իբրեւ ընդ աղօտ ինչ լոյս արշալուսոյ առ ճառագայթարձակ ծագումն լուսաւորին, որոյ լուսովն գեղեալ աշխարհի, եւ վերածնեալ յուսով, հաւատով, եւ սիրով՝ ողջունեսցէ զնա երգով օրհնութեան :

Ոչ է պարտ մոռանալ, զի չիք ինչ ընկերութիւն եւ ոչ կենդանութիւն առանց պարտուց, եւ կրօնն իսկ ի պատուիրանս իւր՝ է պարտք, եւ ի վարդապետութիւնս նորին են միանգամայն ճշմարտութիւնք, որ կառուցանեն զանշարժ հիմն յաւիտենական պարտուց :

Որ ցուցանէ զանձն իւր լինել անկրօն, յայտ առնէ զի արտաքոյ է պարտուց, արտաքոյ զգացմանց, հաւատոյ, եւ բնական ազդման հասարակաց. ուրանայ զիմացականութիւն եւ զմարդկային խիղճ, զբնութիւն իւր, եւ զօրէնս բնութեան. ուրանայ զընկերութիւնն, եւ զանձն իւր եւս. քանզի առանց ընկերութեան զիա՞րդ ունիցի զգոյութիւն, եւ զի՞նչ արդեօք լինիցի:

Եթէ այր իւրաքանչիւր չպարտի ինչ այլոց ի մարդկանէ, ապա եւ այլք եւս չպարտին նմա ինչ:

Անդուլ պատերազմ լիցի ընդ նոսա, նոյն եւ ընդ ամենայն էակս:

Գուցէ արդեօք թշուառութիւն ինչ հաւասար այսր թշուառութեան:

Առաջին արդիւնք պարտուց, յորժամ ճշդիւ լցեալ իցեն, է իրական վայելչութիւն բարւոյ. որ ի վեր է քան զամենայն

բարիս, եւ ներքին հանդարտութիւն, խաղաղութիւն, եւ քաղցր բաւականութիւն, եւ այն պարզ ուրախութիւն որ մխիթարէ զանձն ի վիշտս կենաց, եւ ի յափշտակութեան մտաց, եւ ձգէ ստէպ ի լուսազոյն աշխարհն :

Առաքինութիւնն է նախ իւր վարձ սեպհական, եւ մոլութիւնն ծնանի զպատիժ, որ զհետ զայ նմին անհրաժեշտ հարկաւ :

Քանի՛ հոգոց եւ տատամսութեանց եւ ամենայն ազգ չարեաց չիցէ այն աղբիւր :

Տեսեալ իցէ որ երբէք զչարն երջանիկ :

Ճոխութիւն եւ իշխանութիւն կարեն լինել բաժին նորա, բայց ոչ թէ յիշխանութեանն եւ ոչ յառատութեան ընչից եւ ստացուածոց իցէ երջանկութիւն. եւ եթէ գիտէր որ թէ զորպիսի՛ վէրս խղխայթեալս ծածկիցեն հասարակօրէն ոսկեհիւս եւ մետաքսեղէն հանդերձք եւ ծիրանի՛ զարհուրհեալ արդէօք եւ հրաժարէր :

Տեսանես զերդաստան, որոյ ամենայն անդամքն հաւատարիմ են ի կատարումն պարտուց իւրեանց, չպակասելով երբեք յիրս ինչ. պտուղ համաբանակաց աշխատութեան նոցա նուիրեալ է պիտոյից հասարակաց, չէ երբեք վատնեալ այն յամօթալից հեշտութիւնս. հայր նոցա օրինակ բարի է ամենեցուն, եւ մայր նոցա պատաղեալ միշտ ի հոգս առտնին իրաց, եւ նուիրեալ զանձն առն իւրում եւ զաւակացն, առիթ է գորովոյ եւ անձնանուէր սիրոյ. թէպէտեւ ազգատոհմն այն իցէ յաղքատութեան, բայց սակայն նախադաս առնէ նա զվիճակ իւր այլոյ ազգատոհմի որ նպաստաւորեալ իցէ յոյժ ի բաղդէն, բայց մատնեալ յանկարգութիւն, եւ ներքին գժտութիւնք նորին եւ նախանձ եւ ատելութիւն՝ ծնանին հանապազ զդժբաղութիւն փոխադարձ պարտուց:

Մեծարի առաքինն, զի․ ամենեցեան

ձգին իմն առ նա ախորժ հաճութեամբ ։

Արհամարհի երկրորդն, զի փախչին ի նմանէ ամենեքեան որպէս ի գարշելի զեռնոց ։

Ո՛հ, թէ անգամ մի իջանէր ոք ի խորս սրտի առն բարերարի՝ վառելոյ ի սէր եղբարց իւրոց, տեսանէր անդ զգաղտնի իմն ուրախութիւնս՝ այնչափ եռանդունս և այնչափ սուրբ, զի առ ոչ ինչ համարէր զայլ ամենայն զուարճութիւն ։

Ապա նախ առաջին արգասիք պարտուց են՝ նուազեցուցանել զթշուառութիւնս կենաց, և քաղցրացուցանել զդառնութիւնս նոցին, և խառնել յայնմ ամենայնի կարգ ինչ սքանչելի և անծանօթ ի վայելչութեանց այնոցիկ որոց տիրէն չար կիրք, կամ որոց անձնասիրութիւն ամփոփէ զնոսին յինքեանս ։

Յետ ազատաբար խորհելոյ և գործելոյ մարդոյն, զինչ այլ ինչ պիտոյ իցէ նմա .

կամք հաստատակաց եւ չանք հաստատակաց. այսինքն ճանաչումն իրաւանց այլոց, որպես եւ սեպհական իրաւանց անձին, եւ կատարեալ խառնումն շահուց՝ ի մի շահ, ապա թէ ոչ՝ ոչ եւս լինէին իրաւունք, այլ լինէր առանձնաշնորհութիւն ինչ, զորմէ ամենայն որ բաղոք հարկանէ:

Եթէ չսիրէ որ զընկերն իբրեւ զանձն իւր, չիք յոյս ազատութեան նորա, քող համաձայնեսցէ նա զկամս իւր կամաց այլոց ի ծառայել միշտ:

Իսկ եթէ սիրեսցէ այր խորաքանչիւր զընկեր իւր իբրեւ զանձն իւր՝ ոչ նեղեսցի բնաւ այնպիսին յորժամ հարստահարիցի ուստեք, տացի նմա օգնութիւն եւ նպաստ ընդդէմ անիրաւութեան, եւ լիցի դիմակայութիւն ինչ հարստահարութեան ի հաստատակաց ընկերսիրութենէ:

Յորժամ յանիրաւի յարձակին ի վերայ նորա, յաղթանակէ նա կանուխ կամ

անձամբ, ապա պարտ է կամիլ զարդարութիւն :

Պարտ է յարգել զիրաւունս այնոցիկ եւս, որք առ ոտն կոխիցեն զիրաւունս մեր : Չի յապահովութիւն, ազատութիւն, եւ սեպհական ստացուածք՝ պատկառելի են ամենեցուն. քանզի պարտիք հաւասարապէս առ ամենեսեան տարածին :

Երէ միանգամ դժրեսցեն մարդիկ պարտուց, յո՞ դադարեսցեն դժրանք :

Ոչ երբէք անկարգութեամբ լինի դարման տանել անկարգութեան :

Պարտիմք ի միասին հրատարակել ըզպարտս եւ զիրաւունս, չբաժանել զնոսին ի միտս մեր երբէք, որպէս զի լիցին միշտ միաւորեալք ի խղճի մերում :

Որ սիրէ զանձն իւր, զանձնէ իւրմէ միայն խորհի, ընդ նմ ընկերանայցէ :

Եւ զիարդ մարթ իցի հաստ լինել թէ որ բաժանի՝ ոչ կարէ երբէք միաւորիլ :

Աստ աշխատութիւն, սա՛կ ի լնուլ :

Անդ հանգիստ, ճշմարիտ ուրախութիւն, ստոյգ վարձ պարտուց անթերի կատարելոց :



## ԳԼՈՒԽ Զ.

### ՅԱՂԱԳՍ ՊԱՐՏՈՒՑ ՄԱՐԴՈՅ ԱՌ ԸՆՏԱՆԻՍ ԻՒՐ.

« Իսկ եթէ ոք իւրոց, եւ մանաւանդ եւ ընտանեաց խնամ ոչ տանիցի, ի հաւատոցն ուրացեալ է, եւ չար եւս քան զանհաւատսն է. » (Ա. Տիմ. գլ. Ե, Զ) :

Բաց յընդհանուր պարտուց մարդոյ որ առ ինքն եւ առ ընկերս իւր, են եւ այլ մասնաւոր պարտք նորա առ ընտանիս եւ առ հայրենիս իւր :

Խօսեսցուք նախ զպարտուց նորա առ ընտանիս անդ, ապա առանձինն զոր առ հայրենիս :

Սէր ընտանեաց այնչափ խորին եւ այնչափ ընդհանուր է, զի սակաւ ինչ մնայ բարբարոսականին առնել, ուսուցանել մարդ-

կան զպարտս որք զօդեն զնոսա ընդ մեր֊ ձաւորս իւրեանց ։

Այլ եւ չէ նմա հարկաւոր ունել զառաջս բուռն կրից, կամ կոյր զորովոյ ծնողաց. քանզի նորին իսկ՝ որք անձնատուր լինին այնմ, հանաչեն զխալանս իւրեանց ։

Էակ ինչ անկարող ծննդեան, անկա֊ տար ինչ եակ է. ապա կինն կատա֊ րումն է մարդոյն ։

Այր եւ կին յերկուս մարմինս ի մի միու֊ թիւն բովանդակին. եւ զաւակքն որք ծնա֊ նին ի նոցանէ, համապազորդութիւնինչ են զոյութեան նոցին, վերակենցաղին նոքա ի նոսին, եւ յաջորդական սերնդովք վե֊ րակենցաղին յանքաւս ։

Վասն այսորիկ ամուսնութիւնն ոչ օրինադրութիւն ինչ է իրաւարարի, այլ բնական եւ բարոյական միութիւն է առն ընդ կնոջ, եւ ամենայն հարուածք կըշ֊ ռեալք ամուսնութեան, միութեան նորին

եւ սրբութեանն ՚ են դժրանք ընական օրինաց, անմիտ ապստամբութիւն ընդդէմ արարչին, աղբիւր անթիւ անկարգութեանց եւ չարեաց :

Իրաւունք առն եւ կնոջ հաւասարք են. իսկ յարմարութիւնք եւ պաշտօնք նոցա զանազանք :

Կինն չէ աղախին առն, եւ ոչ բնաւ գերի նորա, այլ ընկեր եւ օգնական նմա, ոսկր յոսկերաց եւ մարմին ի մարմնոյ նորա :

Քանզի ոչ ի գլխոյ առն առաւ կինն, զի մի՛ գլուխ համարիցի, եւ ոչ յոտիցն, զի մի՛ առ ոտն կոխիցի, այլ ի կողիցն, զի հաւասար եղիցի :

Ըստ չափու առաւելութեան, որով բարոյական զգացումն ժողովրդեան միոյ կատարելագործի, պատիւ եւ ազատութիւն կնոջ առաւելու. ոչ ազատութիւն ի պարտուց եւ ի կարգէն, այլ յամենայն ծառայական կախմանէ :

Այրն պարտի կնոջ իւրում զմեծարանս, եւ զսէր, եւ զպաշտպանութիւն :

Կինն պարտի առ իւրում հպատակութիւն, սէր եւ մեծարանս :

Տուեալ առն զօրութիւն, յանձնեալ է նմա Աստուած եւ զծանրագոյնս յաշխատութեանց :

Տուեալ կնոջ զորով եւ քաղցրութիւն, բաշխեալ է նմա զայն ամենայն, որով թեթեւացուցանէ զծանրութիւնս առն, եւ առնէ զաշխատութիւն նորա անսպառ աղբիւր անխառն ուրախութեանց :

Բայց փախճան ամուսնութեան ոչ է միայն տալ ամուսնաց զդիւրագոյն եւ զքաղցրագոյն կեանս, այլ գլխաւոր նպատակ նոցա է մշտնջենաւորել ծննդեամբ զմարդկային ազգատոհմն մեծ :

Ո՞ կարէ բացատրել զանպատմելի խորհրդութիւն հարց եւ մարց, որով խայտանն, յորժամ ողջագուրեալ ի վերայ սրտից

զառաջին պտուղ սիրոյ իւրեանց, զգան յանձինս իբրեւ թէ վերածնեալ իցեն նո-վաւ :

Ի վերայ զան յայնժամ նորանոր պարտք, յաւելեալք ինախկին սահմանեալ պարտոն՝ ի միաւորել զայր եւ զկին :

Ապա թէ ոչ՝ զինչ լինէին ապիկար արարածքն որք առին զգոյութիւն ի նո-ցանէ :

Մայրն պարտի զաւակաց զկարն իւր, եւ զանդուլ խնամս, յորմէ կախի պահ-պանութիւն նոցին յամսն յառաջինս :

Հայրն պարտի նոցա զհաց եւ զհան-դերձ, միանգամայն եւ զզօրով իւր, եւ զպաշտպանութիւն, պարտի հոգալ զամե-նայն պէտս նոցա, մինչեւ ցայնվայր, յորում կարողս լինիցին հոգալ զայն ինք-նին :

Բայց որպէս հոգայցէ զայն, եթէ տուեալ իցէ զանձն ի դատարկութիւն, կամ ան-

կեալ ընդ բռնութեամբ ցանկութեանց իւրոց, վատնիցէ զվարձ օրական աշխատութեան իւրոյ առ ի հանճել զցանկութիւնսն:

Զինչ իցէ այնպիսին, երբ ոչ սպանող իւրոցն, եւ զինչ զոր ըմպէ նա բաժակաւ դողդողջուն ձեռօք, երբ ոչ արտասուք, արիւն, եւ կեանք կնոջ իւրոյ եւ զաւակաց:

Անասունք մոռանան զինքեանս, առ ի հոգալ զձագս իւրեանց. կամի մարդ իջանել յանբանութիւն առաւել քան զանասունս վայրի:

Բայց թէպէտեւ զաւակք ընկալցին ի ծնողաց զսնունդ եւ զմարմին, այլ մի՛ կարծիցեն ծնողք թէ լցեալ իցեն այնու զպարտս իւրեանց առ նոսա:

Զի պարտ է ծնողաց առնել զնոսա մարդիկս. եւ զինչ է մարդ. բարոյական եւ իմացական ինչ եակ:

Այս պարտ է զի ուսանիցին զաւակք ի ծնողաց որոշել զբարին եւ զչար, սիրել զբարին եւ լնուլ զայն, եւ խորշիլ ի չարեն եւ ատել զայն :

Պարտ է ծնողաց յանդիմանել զխայտանս զաւակացն, բայց առանց բարկութեան, ոչ վայրագ բռնութեամբ, այլ զորովական հաստատութեամբ եւ հանդարտութեամբ :

Պարտ է նոցա հրահանգել զզաւակս իւրեանց ի մանուկ հասակի, եւ կատարելագործել ի նոսա զբնական բերմունսն, յորոց վերայ հիմնեալ է ընկերական գոյութիւնն, զզացումն արդարութեան եւ կարգի, կարեկցութեան եւ ընկերսիրութեան :

Ուսումն տուեալ զաւակաց ի վերայ ծնգաց մօրն, եւ դասն հայրական խառնեալ բարեպաշտ եւ տոհմային քաղցր յիշատակօք, ոչ եղծանին երբէք ի մտաց նոցա բոլորովին :

Եւ մի՛ կարծիցեն ծնողք, թէ քանքն քաւական իցեն. զի քանք առանց օրինակի ոչինչ են :

Որպիսի ինչ եւ իցեն խրատք եւ յորդորանք ծնողաց, ամուլ մնան, եթէ գործք նոցա ոչ համեմատիցին նոցուն :

Զաւակք նոցա այնպիսիք լիցին, որպիսի ծնողքն են, մոլիք, կամ առաքինիք :

Զի՞նրդ լինիցին զաւակքն առաքինիք, կարեկիցք, մարդասէրք, եթէ ծնողք բափուր իցեն յառաքինութեանց, եւ անգութք առ ընկերս :

Զի՞նրդ սանձիցեն զաւակք զքանձր ախորժակս իւրեանց, եթէ տեսանիցեն զծնողսն յանձնուժկալութիւն հատեալք :

Զի՞նրդ պահիցեն զաւակք զբնական պնմեղութիւն իւրեանց, եթէ ծնողք ոչ երկնչին բնաւ մեղանչել առաջի նոցա պատկառանաց անպատեհ գործովք եւ անպարկեշտ բանիւք :

Ծնողքն են գաղափարք՝ յորոց վերայ կերպարանի դիւրաւ բնութիւն զաւակաց․ ի ծնողաց կախի լինել զաւակացն մարդ եւ կամ անասուն ։

Բարք մարդկան եւ սկզբունք նոցա չեն զոգցես միշտ միաբանք․ զի բազումք ցուցանեն մարդիկ զմեծարանս յոյժ առ ողջախոհութիւն ամուսնական կապակցութեան, զորդիական զսէր եւ զհայրական խնամս, բայց չառնեն ինչ առ ի ձեռս բերելոյ զայս ամենայն բարիս զորս ճանաչեն, սիրեն եւ կամին ։

Զբօսնուն միշտ ընդ անասունս, բազումք․ չընդունին զնոսա ի տունս իւրեանց, բայց ընդունին այլ ամենայն ուրեք ։

Խօսին զբարի բարի արգասեաց դաստիարակութեան, այլ՝ բաց ի պատուաւոր բացառութեանց, զդաստիարակութիւնն ոչ այլ ինչ համարին, եթէ ոչ հնարս

հասանելոյ ի պայմանն ինչ քաղաքական կենաց :

Թուի թէ ընութիւնն յանձնեալ իցէ նոցա առնել զորդիսն ճարտարապետս, կամ բժիշկս. մոռանան, թէ յանձնեալ է նա մարդիկս առնել զնոսին :

Ցորժամ յապահովի առնիցեն նոքա զինչս զաւակաց իւրեանց, մեռանին ի հանգստեան. կարծեն իմն եթէ այնուհետեւ հատուցին զպարտս իւրեանց առ ընկերութիւնն, եւ առ Աստուած :

Է երբեք զի ուսուցանեն նոքա զաւակաց իւրեանց ինչ ինչ առածս հասարակաց ի վերայ առաքինութեան եւ ուղղութեան մտաց, այլ բազում անգամ յանդիմանի ստութիւն նոցին օրինակօք իւրեանց :

Երանի թէ չդնիցեն ծնողք զզաւակս իւրեանց ի վտանգի սրիկայս, ոմանս առնելոյ զնոսին, իմաստակս, եւ կեղծաւորս :

Եթէ տեսանիցի մանուկ որ պինդ սրտիւ, լի եռանդեամբ, եւ հաշուարար յառաջ քան զհասակ իւր, արհամարհող այն ամենայն զիտութեան՚ որ չփոխարկի իսկոյն ի դահեկանս, աստուչիր թէ հայր նորա կամ յոյժ թշուառ որ է, եւ կամ յոյժ յանցաւոր :

Են որք ասեն. « Եղի ես զորդին իմ ի վիճակի, որով կատարեսցէ զընթացս իւր յաշխարհի » : Որ մանաւանդ պարտ էր ասել. « Պատրաստեցի ես զորդին իմ առնել զպարտս իւր յաշխարհի : »

Եթէ անկեղծ էին մարդիկ ի զանգատս իւրեանց, ընդ նուաստութիւն մտաց, եւ ընդ կնիք բնաւորութեան իւրեանց, համարէին արդեօք զդաստիարակութիւն որդւոց իւրեանց իբրեւ գործ ինչ եւ ժամանակ ի կորուստ գնացեալ, փոխանակ զի ոչ անցուցին զայն յուսումն արուեստի իրիք :

Ծանիցեն ծնողք եւ զայս, թէ ամենեքին մեք ի տգիտութեան ծնանիմք, եւ արգասիք տգիտութեան են թշուառութիւն եւ ցածութիւն :

Չիք ինչ իցէ յաշխարհի աստ այր որ ոչինչ գիտէ, եւ զինչ կարէ լինել :

Առ ինչ իցէ յարմար այնպիսին :

Բազուկս էւեր ունի. սոսկ նիւթական ինչ գործի է անպտուղ վասն անձինն. քանզի բնական կարողութիւնն չունի ինչ արժէս, եթէ ոչ տացի այն ի փոխ. իմացականութեանն որ վարէ զայն :

Ապա այր տգէտ գրեթէ սոսկ մեքենայ ինչ է ի ձեռս նոցա, որք ի գործ ածեն զնա վասն շահու իւրեանց :

Արդ' կամին ծնողք զի այսպիսի լինիցի վիճակ զաւակաց իւրեանց : Կամին զի անկեալ միշտ ի մարդկային պատուոյ' կեցցեն եւ աճեսցին ի կոյր ինչ աշխատութիւն եւ գրեթէ անպտուղ, նմանեալ

եզին որ փոքր զակօսն ի շահ՝ տեառն որ շարժէ եւ առաջնորդէ զնա :

Այս պարտին ծնողք զաւակաց իւրեանց զդաստիարակութիւն, որպէս պարտին նոցա զհաց, զսնունդ մարմնոյ, նոյնպէս եւ զսնունդ հոգւոյ :

Թէպէտեւ ի տխրալից վիճակի այժմեան ընկերութեան, պարտիքս այս բազում անգամ դժուարինք են ի լնուլ :

Բանգի նիւթական կարօտութիւնք այնչափ պաշարեն զմարդիկ, մինչեւ հազիւ կարեն նոքա ունել այլ ինչ մտածութիւն. եւ բազումք կամին վասն շահու իւրեանց, զի մնասցեն նոքա զրկեալք ի լուսաւորութենէ, զի մի օգնութեամբ նորին կարողասցին ազատել զանձինս յիշխանութենէ նոցին :

Թէպէտ են ոմանք, որոց դիւրին է յոյժ լնուլ զայս կարեւոր պարտս, այլ չափազանց՝ մանկանց թէ վնասակար՝ զուր

նոցա առ զմուակս իւրեանց խափան լինի
այսմ բարգում անգամ. քանզի չկարեն եւ
չկամին նոքա լսել երբեք զտրտունջ ինչ
զաւակաց իւրեանց որք տրտնջեն զդաս-
տիարակաց... թէպէտեւ գիտեն քաջ՝ թէ
առանց դաստիարակութեան թշուառ լի-
նին զաւակքն ապա, եւ անհնարին վիշտք
ինքեանց :

Սանձել զբնական հակամիտութիւնս
մանկան, ահա առաջինն ի հոգս իմաս-
տուն դաստիարակութեան :

Ահա այսպիսի են պարտիք զորս դնէ
Աստուած ի վերայ ծնողաց առ զաւակս
իւրեանց :

Ուսցին եւ զաւակքն, թէ զինչ են պար-
տիք իւրեանց առ ծնողս. քանզի ոչ օր-
հնեսցին նոքա, եթէ ոչ իցեն հաւատարիմք
ի լրումն նոցին :

Այլ ի վճարել զայն՝ քանհի դժուարու-
թիւնք ընդ առաջ ելանիցեն :

Զանացարո՛ւք յաղթել այնց, բռնաւոր որ էք դուք. բա՛յց տուք այնց՝ պակասեալ էք դուք ի պարտս ձեր. եւ արժանի, զի յաւուր միում զաւակք ձեր ինքնին իսկ, կորուսեալք պակասութեամբ ձերով, յարուցեալ ամբաստան լիցին զձէնչ։

Մանկունք՝ բնականաբար անձնասէր. պահանջող, ապերախտ, բարկացօղ, ստախօս եւ որկորամոլ են։

Տկարութիւն ծնողաց առնէ զայս տրամադրութիւնս այնպիսի ինչ սովորութիւնս որ ի բնաւորութիւնս դառնան։

Քանզի պարտէ եւ զաւակաց սիրել զհայր խւրեանց, որ ետ նոցա զկեանս, եւ սիրել զմայր, որ սնոյց զնոսա ի գիրկս իւր, եւ դիեցոյց զնոսա ստեամբք իւրովք։

Ո՞ր այն էակ իցէ առաւել անիծեալ քան զայն՝ որ խզէ զյօղ սիրոյ եւ մեծարանաց եղեալ ի Տեառնէ ի մէջ նորա եւ այնոցիկ յորոց ունի զկեանսն։

Զաւակք բազում եւ մեծամեծ հոգս տան ծնողաց իւրեանց ։

Ծնողք ունին միշտ առաջի աչաց զբիւրապիսի պիտոյս զաւակաց իւրեանց, եւ պարտին անդադար աշխատիլ առ ի բաւական լինել այնմ ։

Զօրն ողջոյն աշխատին ծնողք վասն զաւակաց, եւ զգիշերն եւս, մինչդեռ զաւակք հանգչին յանկողնի, բազում անգամ սկեն ծնողք առ ի չտալ պատասխանի զաւակաց ի վաղիւն, յորժամ խընդրիցեն ի նոցանէ հաց, թէ « Համբերեցէք զի ոչ գոյ ։ »

Եթէ կարեն զաւակք այժմէն կցորդ լինել աշխատութեան ծնողաց, թող չանասցին գոնէ դիւրել նոցա զհոգսն, որով եւ հաճոյացին նոցա, եւ օգնեսցեն նոցա յաճել հասակի իւրեանց որդիական գորովանօք ։

Զի մի պակասիցին զաւակք ի փորձն

եւ ի բանն, հարկ է զի առաջնորդիցին նորա բանիւ. եւ փորձիւ ծնողացն, եւ այնպէս ըստ բնական կարգի եւ ըստ կամացն Աստուծոյ, պարտին զաւակք հնազանդս գոլ ծնողաց, եւ քաղցրութեամբ ունկն դնել խրատուց նոցա :

Չէ պարտ զի խռովեսցէ ինչ երբեք զխաղաղութիւնն որ ի մէջ եղբարց եւ քերց, եւ նուազեցուսցէ զսէրն, զոր պարտին ունել առ միմեանս, ելեալ գոլով նոցա ի նոյն արգանդէ, եւ սնեալ նովին կաթամբ :

Իցէ ինչ կապ առաւել զօրաւոր եւ առաւել սրբազան քան զայն :

Այնպէս պարտ է նոցա առնել, զի ամք եւս քան զեւս պնդեսցեն զայն:

Ճանապարհ մեր ի վերայ երկրի դժուարին է եւ խիստ առ ընթանալոյ ընդ այն վստահութեամբ, եւ չսայթաքել յիւրաքանչիւր քայլափոխս, յենցուք ի վերայ միմեանց :

Գայ ժամանակ, յորում կեանք խոնարհին, յորում մարմին տկարանայ, եւ զօրութիւնք շիջանին, յայնժամ պարտին զաւակք խնամ տանել ծնողաց իւրեանց ծերացելոց, խնամ զոր ընկալան ինքեանք ի նոցանէ յառաջին ամս հասակի իւրեանց:

Որ անտես առնէ զծնողս ի կարօտութեան նոցա, եւ հայի ցրտութեամբ ի տառապանս եւ ի վիշտս նոցա, արդարեւ ասեմ, անուն նորա գրեալ է ի գիրս գերագոյն դատաւորին ի կարգս հայրասպանից:

Եւ պահեսցեն քաջ ի մտի զայս վերջին բանս իմ ամենեքեան, հարք, մարք, եղբարք եւ քորք, եթէ զոն ի վերայ երկրի ճշմարիտ ուրախութիւնք, իրական երջանկութիւն ինչ. այս ուրախութիւնք գտանին ի ծոց ընտանեաց տան միոյ բարւոք կարգաւորելոյ, որոց պարտիքն

կատարին ճշդիւ յիւրաքանչիւր անդամոյն. քանզի երջանկութիւն յաշխարհի աստ ոչ լինի երբեք յընդհատեալ վայելչութեանն, զոր մարդիկ բարիս կոչեն, այլ ի սէրն իրերաց որ ամոքէ զչարիս, զանբաժանելիսն յայժմու գոյութենէս մերմէ, եւ խառնէ զայն ընդ հեռաւոր ինչ սկզբան ապագայ խորհրդաւոր երանութեան:



## ԳԼՈՒԽ Է.

### ՑԱՂԱԳՍ ՊԱՐՏՈՒՑ ՄԱՐԴՈՑ ԱՌ ՀԱՑՐԵՆԻՍ.

« Պաշտեա զԱստուած, սիրեա զընկերս, լեր պիտանի հայրենեաց : »

Վիճակն ընկերական, որ բնական իսկ է մարդուս, հաստատէ ի մէջ ընտանեաց առնչութիւն ինչ, յորոց ծագի եւ նորոգ կանոն պարտուց, պարտք ասեմ առ հայրենիս :

Հայրենիքն է մայր հասարակաց, միութիւնն որով խառնին անհատք ընդ միմեանս, անուն է սրբազան, որ յայտ առնէ զկամաւոր խառնումն ամենայն շահուց ի մի եւեթ շահ, եւ զամենայն կենաց՚ ի մի միայն մնացական կեանս :

Այս խառնումն՝ աղբիւր բազմառատ եւ անսպառելի բարեաց, սկիզբն է հանապազորդ յառաջադիմութեան, եւ այսր խառնման արդիւնք են անեցուցանել յանբաւս զզօրութիւն պահպանութեան, եւ զկարողութիւն կատարելագործութեան, զարտադրականն զօրութիւն, եւ զյաջողութիւն նորին :

Միով բանիւ՝ նուիրումն է սա անձանց ամենեցուն, զոհ եւ սէր, որ հեղձուցանէ զանարգ սէր անձին, եւ լնու զկատարեալ միութիւն անդամոց ընկերական մարմնոյ : Ասէ ոմն յիմաստնոց.

« Պատուէր իմն ընկալեալ եմ ես ժառանգական աւանդութեամբ՝ ոչ միայն ի հօրէ իմմէ, այլ եւ ի հաւոյ իմմէ եւ ի նախահաւուս, թէ յետ պարտուցս իմոց որ առ Աստուած, չէ պարտ լինել ինձ առաւել սիրել ի եւ առաւել սրբազան քան զսէր եւ զհայրենեացս : »

Ապա ուրեմն առաջին պարտք մարդոյ առ հայրենիս իւր են չան ի գործ արկեալ վաստակել անգոյ եռանդեամբ ի հաստատութիւն փրկաւէտ եւ մեծարգոյ սկզբանց բացարձակ հաւասարութեան իրաւանց, ուստի յառաջ գան ամենայն հասարակաց եւ մասնաւորաց ազատութիւնք, եւ դարձեալ չանալ բառնալ զառանձնաշնորհութիւնս ամենայն որ զեան մեծապէս հասուցանեն հասարակաց իրաւանց:

Աղէ զինչ էր ի սկզբան անդ որ պահպանէր զազատութիւն ընտանեաց, եթէ ոչ հաւասարութիւն եւ արդարութիւն, անուամն բարեկեցութեան, կարգաւորութիւն հասարակաց վաստակոց, եւ անսահման կարողութիւն ի ճանաչել եւ ի գործել, որով մարդկութիւնն ունի զսերունդն:

Եւ զինչ ինչ պէտք իցեն առ այս, եթէ ոչ բարւոք օրէնք:

Երէ կամի որ զիտել, թէ զի՛նչ էն բարւոք օրէնք, թող զայս ինչ դիտեսցէ, զի եթէ արարեալ իցեն նորին յօմանց եւեթ, յօգուտ նոցա միայն լինին, իսկ եթէ յամէնեցունց, լիցին վասն բարեաց հասարակաց:

Ապա չէ պարտ դադարել բնաւ, մինչեւ ամենեքեան գործակիցք լինիցին յօրինուածոյ օրինաց, ընտրութեամբ օրէնդրաց:

Եւ հայրենիք, յորոյ ի ծոց անդ ժողովին երամ երամ ընտանեաց՝ հարկ է զի սիրելի լինիցին ժողովրդեան ի վեր քան զիւրաքանչիւր որ ի նոցանէ, ապա թէ ոչ խզի կապն որ միաւորէ զամենեսեան:

Հպատակել զմարմինն ողջոյն միում յանդամոց նորա, է եղծանել զընկերութիւնն, արկանել զայն վերստին ընդ իշխանութեամբ անձնասիրութեան, որ դդրդէ զհիմն ընկերութեան:

Ապա հայրենեաց է այն ամենայն որով են մարդիկ, եւ ամենայն զոր ինչ ունին, սիրտ իւրեանց, եւ բազուկք, եւ վաստակք եւ ինչք իւրեանց, եւ կեանք ։

Որ տարակուսի մեռանել վասն հայրենեաց, այր վատանուն է միշտ ։

Հայրենասիրութիւնն է զգացումն ինչ որ նիրհէ ի բազում անձինս, ընկղմեալս ի խորս ընտանեաց եւ գործոց ։

Սիրելի են այն ինչ իրք, յորս լինի վայելել հաւաստեաւ, հանդերձ յապահովութեամբ, եւ առանց եւս խորհելոյ՝ թէ մարթ իցեն կորնչել ։

Բայց սիրելի են սիրով անզիտութեան ։

Այս զգացումն է նաեւ բազմաց ի նոցանէ, որք ուսեալ, եւ խորհեալ, եւ յաբեալք են միայն յանձուկ սահմանի, յերկիր համարակաց, ի տեղւոջ յորում աշխատին, եւ երջանկանան, եւ կիրս կրեն ։

Իսկ յուսաւորեալն հայրենասիրութիւն, որ յարէ զմարդիկ ի փառս, եւ ի ներքին բարգաւաճանս երկրի իւրեանց, է զգացումն ինչ որ ունի զզօրութիւն, զյարատեւութիւն եւ զազդեցութիւնն ի վերայ անձանց ընտրելոց :

Նոքին իսկ որք ճանաչեն զմեծութիւն պարտուց առն քաղաքացւոյ, խառնեն բազում անգամ զքաղաքական կիրս ընդ հայրենասիրութեանն :

Քաղաքական կիրք յայնժամ եւեթ օրինաւորք են, յորժամ հայրենասիրութիւնն վառարան է նոցին, բայց բազում անգամ ի վէճս կուսակցութեան դուն ուրեք զօգուտ աշխարհին խորհին մարդիկ :

Որ կամի խառնիլ ի գործս հասարակաց վասն ցանկութեան իւրոյ, նախ քննեսցէ զսիրտ եւ զերիկամունս իւր, եթէ խնդրիցէ զայն վասն փառաց հայրենեաց,

որոց հաղորդ լինել կամի, եւ կամ վասն յաջողութեան ընկերութեան իւրոյ :

Այնչափ դիւրապատրաստ են մարդիկ պատրուակել զանարգ կիրս ընդ մեծամեծ ասացուածովք, մինչեւ խաբել երբեմն եւ զանձինս անգամ :

Կարող են նոքա ճանաչել զանխառն սրբութիւն դիտաւորութեան իւրեանց, երբ անկարողս տեսանիցեն զանձինս փոխելոյ զզգացումն եւ զգնացս իւրեանց ընդ բաղդին, երբ պատրաստ իցեն ծառայել յորում եւ իցէ աստիճանի, առանց նետամուտ լինելոյ առաջնոյ բարձին, եւ երբ սիրեն զայն ամենայն որ յօգուտ իցէ հայրենեաց, նաեւ յայնժամ իսկ՝ յորժամ բարիքն այն հայրենեաց՝ լինիցի ձեռամբ իւրեանց, կամ ձեռամբ բարեկամաց իւրեանց :

Դժուարին իմն է երբեմն որոշել ի մէջ երկուց պարտուց, զոր օրինակ, յորժամ

դէպ լինելու ումեք պիտանի լինել մարդկութեան, առանց վնասելոյ շահու հայրենեաց, կամ նուիրիլ հայրենեաց, առանց վնասելոյ բարեաց եւ յապահովութեան ընտանեաց :

Արք անձնասէրք զհետ բերեն անտի, թէ զանձնէ եւեթ եւ զիւրոցն պարտ է խորհել. այլք, թէ պարտ է յամենայն դէպս զոհել զընտանիս եւ զհայրենիս օգտի մարդկութեան :

Երկուց մոլորութեանց յայսցանէ՝ առաջին մերժելի է, եւ երկրորդն՝ թէպէտեւ ունի ինչ մեծ եւ ազնիւ, այլ ոչ զերծ ի մոլորութենէ :

Չէ պարտ լուծանել զդժուարութիւնս ընդհանուր սկզբամբք. զործք, եւ խիղճ ոչ ձգտին առ այնչափ պարզութիւն եւ խստութիւն :

Մեք ամբողջական մասունք եմք աշխարհի որ բազմապատիկ իմն է, եւ ու-

նիմք յանձինս մեր սկզբունս եւ զգայութիւնս, որք պատերազմին ընդ միմեանս, եւ մեք պարտիմք միաբանել զնոսին քան հեղձուցանել :

Ճշմարիտ ղպրոց մարդկութեան հայրենասիրութիւնն է, եւ ղպրոց հայրենասիրութեան' ոգին ընտանեաց :

Ուսանի մարդ սիրել զմարդիկ եւ զերկիր իւր զկնի որոքանի մանկութեան իւրոյ :

Ամենայն բարի զգայութիւնք ելանեն յայսմ աղբերէ :

Որպէս միտք իմ ոչ կարեն ըմբռնել զաշխարհ յակածն բովանդակ, եւ սիրտ իմ յարի նախ ի սէր իւր, եւ առեալ կարողութիւնս' լինի ընդունակ տարածել զգութ իւր առ մարդկութիւնն :

Մարթի ասել ցայնոսիկ որք համարին' թէ պարտ է յամենայն դէպս զոհել զընտանիս եւ զհայրենիս մարդկութեան,

զբանս զայս, զոր Արիստոտել ասէր ցՊղատոն, որովհետեւ կարծէր իմն նա այնպէս թէ պարտ իցէ նախամեծար առնել զսէր հայրենեաց, քան զսէր ընտանեաց. « Խաբիս դու ընդ բնութիւն սիրոյն, եւ ընդ « օրէնս կատարելութեան նորա, սէրն ոչ « այնչափ ընդարձակ իցէ է, զի անդէն « եւ անդ զայսպիսի ինչ գրաւիցէ, ունիս « դու սակաւիկ ինչ մեղր, եւ կամիս « ամալ զայն ի ծով : »

Երկրորդ կարծիքն այսպիսի ինչ է : Սակայն եւ այնպէս՝ պարտ է նախադասել զմարդկութիւնն հայրենեաց. քանզի ժողովուրդք ունին ի մէջ իւրեանց զնոյն առնչութիւնս, զոր ունին ընտանիք ի մէջ իւրեանց, եւ հպատակին նոյն պարտուց :

Ազգ մարդկան եւրեւամբ մի է, եւ կատարեալ յայնժամ հաստատեսցի, եւ չարիք որ քանդեն զերկիր յայնժամ անեբեւոյթ լիցին բոլորովին, յորժամ կործա-

նեալ ազգաց ազգաց զաղետալի պատնէշս որք բաժանեն զնոսա, կազմեսցեն մի միայն ընկերութիւն մեծատարած :

Ամփոփն հայրենասիրութիւն անձնասիրութիւն է ժողովրդոց, եւ ոչ սակաւ աղետալի հետեւանս ունի քան զանհատականն անձնասիրութիւն. զատուցանէ եւ բաժանէ զբնակիչս զանազան գաւառաց, եւ զրզռէ զնոսա վնասել միմեանց, փոխանակ օգնելոյ. նա ինքն է հայր զարհուրելւոյն այնորիկ եւ արիւնահեղին որ կոչի պատերազմ :

Զիա՞նչ առաւել հակառակ բնութեան եւ օրինաց նորա քան զանունն օտարոտի :

Զիցէմք մեք ամենեքին եղբարք, եւ որպէս եղբայրն լինիցի օտարական եղբօր :

Իւրաքանչիւր ժողովուրդ պարտի այլ ժողովրդոց արդարութիւն եւ սէր, պարտի մեծարել զիրաւունս նոցին, եւ ի պէտս

նոցա նպաստամատոյց լինել, թէ ի պաշտպանել զնոսա, եթէ յարձակի որք ի վերայ նոցա, եւ քե ի վերստին նուաճել ընդ տերութեամբ, եթէ կողոպտեալ իցէ որք զնոսա անտի : Ժողովուրդ որ թոյլ տայ մերձաւորին իւրում հարստահարիլ յայլ ժողովրդենէ, փորէ զփոսն յոր թաղեսցի սեպհական ազատութիւն իւր :



# ՑԱՒԵԼՈՒԱԾ

## ԲԱՐԵՍԻՐՈՒԹԻՒՆ.

Գոյ առաքինութիւն իմն առաւել քաղցր եւ պատուական քան զամենայն առաքինութիւնս, ազնուական զգայութիւն ինչ ազդողագոյն քան զպարտս, առաւել ընդհանուր քան զբարեբարութիւն, առաւել բարեբարոյ քան զլաւութիւն, եւ սա իսկ է ԲԱՐԵՍԻՐՈՒԹԻՒՆ :

Անուանս այս յայտնապէս ցուցանէ՛ թէ ընդհանուր եւ մասնաւոր բարիք մարդկան՛ են կամք նորա :

Բարեսիրութիւն է սկզբնական ազդումն հոգւոյ մերոյ, սա եղեւ պաշտատական

նախկին մարդկան որք էլին յարարչու-թենէն ։ Ի գործածութիւն այսր առաքի-նութեան է՛ յոր յօղեաց բնութիւնն զառա-ջին երջանկութիւն նոցա ։ Սա ոչ ստացեալ լինի, զի ընդաբոյս է, այնպէս կից է ընդ կազմութիւն գործարանաց մերոց, զի չկարօտի սակաւ ինչ ջանից ։ Եւ սա կա-րեւոր կարողութիւն է զոյութեան, եւ յարմարութեան ընկերականն մարմնոյ, է մին յեակն ստորոգութեանց զգալի դրու-թեանց, եւ ըստ Արիստոտէլի, սկիզբն է սա բարեկամութեան ։

Այս պարտ է համարել զբարեսիրու-թիւն անընդդիմակ յոյժ ի բարոյական պէտս ։ Բնութիւնն ազդէ զայս յամենայն մարդիկ, թէպէտեւ չիցեն ամենեքեան այսու հաւասար պատրաստեալք ։

Այս առատամիտ տրամադրութիւն հո-գւոյ բացայայտնի երբեմն յանկարծ եւ առանց ինչ մտերիմ ծանօթութեան ան-

հատի ուրուք, բազում անգամ յայտնէ զինքն անձանց որոց շատ համարի ձգիլ ի սէր փոփոխակի, հանդիպելով ի հրապարակի, ի կառս եւ ի նաւի, այսօրիկ անձինք մերձենան յայնժամ անընդդիմակ ինչ հրապուրանօք:

Այս բարեսիրութիւնն է յայն յօժարութեանց մերոց որ առաւել անշատել է յամենայն անձնական պատճառէ, անտի զայ՚ զի մեծամեծք ցուցանեն զայս առ ստորակայս իւրեանց:

Թուի եւս՚ թէ մարդն այսու զանազանի ի կենդանեաց, որ բազում անգամ շարժեալ է յանշահախնդիր զգայութեանց. բարեսիրութիւն նորա ունի առ այս օրէնս զհամակրութիւն եւ զընկերութիւն միայն, որ ձգտի մերձեցուցանել զամենայն զգալի եակս:

Պարտքն պատուիրեն մարդոյ զարդարութիւն որ առաջին եւ խստագոյն է

յառաքինութիւնս, եւ որ շատ է հասարակաց եւ ոչ մասնաւորաց :

Բարեսիրութիւն է առաքինութիւն ինչ, միանգամայն եւ զուարճութիւն . բայց համեմատեալ ընդ անձուկ կարողութեանց մերոց, զսակաւուք ոմամբք եւեթ կարէ նա տարածիլ, շրջանակ նորա սահմանեալ է հարկաւ ըստ չափոյ կարողութեանց իւրոց:

Լաւութիւն է հանգամանք, որակութիւն ինչ առաւել, քան առաքինութիւն, տկար է նա բազում անգամ, զրեթէ միշտ սակաւ ազդոյ, ի ճանաչել զնա՝ շատ է հեռացումն նորա յամենայն չարութենէ, թէպէտեւ չառնիցէ նա բարիս, այլ ստանայ տակաւին զայն անուն, չառնելով ինչ չարիս :

Դժուարին է յոյժ զանազանել *զՈղորմութիւնն ի Բարեսիրութենէն*, եւ յաստուածային միտս Օրէնսդրին քրիստոնէից այս երկու բառք հոմանունք լինէին արդէօք եւ խառնէին ի մի եւ ի նոյն իմաստ :

Ստուգաբանութիւնն իսկ *Ողորմութեան* բանի զայն հաստատէ, որպէս զթութիւն, մարդասիրութիւն, բարերարութիւն, խնամք, կարեկցութիւն, շնորհ, սէր. զոր օրինակ. « Զողորմութիւն կամիմ եւ ոչ զզոհ:» « Արա՛ սէր» այսինքն շնորհ, ողորմութիւն:

Բայց յանցանել դարուց՝ իմաստ բառից փոխէ զընութիւն, այլայլի կամ չափաւորի, թէպէտ արտայայտութիւն այսր բառի չիցէ կորուսեալ զքաղցրութիւն զազնուութիւն եւ զընդհանրութիւն իւր յաչս լուսաւորեալ մարդկան, բայց փոխարկեալ է ստէպ ի միտս՝ ռամկական առումն *Ողորմութեան* բանի, զոր չքաւորութիւնն ընդունին ի ճոխութենէն, եւ զոր ամբարտաւանութիւնն ստիպէ բազում անգամ զանազանիլ խոնարհութեամբ բարերարութեան:

Բազումք ի մարդկանէ ողորմածք

ոմանք համարին բաշխելով ըստ կարգի ողորմութիւնս ինչ, թէպէտեւ այլք յաւելուն յայն զբարեպաշտական պարտս, հոգալով զորբոց, զծերոց եւ զհիւանդաց, այլ սակաւ յոյժ են որ քուին ճանաչել թէ զինչ ճշմարիտ *ողորմութիւնն* իցէ:

Լաւ եւս կամելով պարտաւորել զմիտս ԲԱՐԵՍԻՐՈՒԹԵԱՆ, ասեմք եթէ Բարեսիրութիւն է կարեկից լինել սխալական մարդկան. ներել տկարութեան նոցա, լուսաւորել զմիտս նոցա, քաղցրութեամբ վարիլ ընդ բարոյական հիւանդութիւնս նոցա, ի բաց դարձուցանել զնոսա ի դատարկութենէ, քաջալերել զնոսա յաշխատութիւնս իւրեանց, զհետ կրթել այնմ ամենայնի որ կարէ կատարելագործել զազգ մարդկան, եւ ամոքել զբուռն կիրսն. քաղցրացուցանել զխստութիւնս, խրատել ներողութեամբ զհակառակ կարծիսն, մխիթարել

զթշուառս, օգնել տկարաց, տալ օրինակ բարի սիրոյ եւ նուիրման վասն հայրենեաց եւ մարդկութեան առ հասարակ, միով բանիւ՝ ձեռնտու լինել ամենայն հնարիւք յերջանկութիւն մարդկան, զոր բնութիւնն եղբարս եւ հաւասարս արար միմեանց, ահա այսորիկ են քաղցր եւ սրբազան պարտք *Բարեսիրութեան* ։

Ուր բարեսիրութիւն փայլիցի, կարէ որ վստահ լինել, թէ մեծագոյն մասն մոլութեանց հեռացեալ, յաղթեալ եւ վտարեալ իսկ է անտի ։

Այր որ բարեսէրն իցէ չկարէ լինել անձնասէր, ապա եւ ոչ ագահ, ոչ բարկացող, ոչ նախանձոտ, եւ ոչ քինախնդիր. առ նմա սէր անձին (յորմէ չկարէ մարդ անջատիլ) լուսաւորեալ իմն է սէր, գիտէ նա թէ այն ամենայն երջանկութիւն որ ի վնաս այլոց լինիցի՝ է ծպտեալ իմն թշուառութիւն ։

Քանզի բարեսիրութիւն յաւէտ անշա-

հախնդիր է ի կիրս մեր, եւ զի ծագի նա ի համակրութենէ միայն, յայտ է թէ ամենայն գործք որք յառաջ գան անտի՝ պարտին լինել մասն գովեստից մերոց : Անտի եւս հաստատի վսեմ գեղեցկութիւն զգացմանս այսորիկ՝ որ ընդ բարձրագոյնս առաքինութեանց հանդիսանայ :

Ամենայն մարդ որ պակասի ի բարեսիրութեան , զարտուղի ընթանայ ապա յընդաբոյս այս օրինաց, որոյ հարկ՝ անշուշտ իսկ է, չէ նա արժանի մասն լինել ընկերական մարմնոյ. քանզի ոչ միայն պարտ է մարդոյ տարածել զառատամիտ բարեսիրութիւն իւր առ որդիս, առ ազգականս, եւ առ բարեկամս իւր, այլ եւ առ ամենեսեան, որք իբրեւ զնա ի մարդկային պատշաճի ազգ: Առանձնականին երջանկութիւն յայնժամ միայն է օրինաւոր, յորժամ միաբանի ընդ հասարակաց երջանկութեան :

Առ ի հեռնոյ լինել մարդկան՝ պարտ է ապա բարեխիրութեան լինել եզրակացութիւն այսր գեղեցիկ հակամիտութեան, որ ածէ առաջնորդէ մեզ ցանկալ զբարին ամենայն կենդանի էակաց մեզ նմանելոց :

Նուիրումն անձին զոր բարեխիրութիւն սահմանէ՝ լինի յայնժամ մեծագին հնչ : Գործ հնչ ճշմարտապէս արդիւնական է, յորժամ ուժգին եւ միայն շարժեալ է յազդման բնութեան առնձնութեան : Բայց ճանաչելով զմարդն տկար հնչ արարած ի վերայ երկրի, չէ պարտ պահանջել զի ուրասցի նա բոլորովին զանձն իւր ի ծառայութիւն հաւասարից իւրոց, կարի իմն էր արդեօք ակն ունել այսմիկ ի մարդկային բնութենէն. Աստուածութիւն է միայն ընդունակ ծածկել բարերարութեամբն իւրով զէակս, յորոց չունի ինքն ակն ունել իմիք :

Բարեխիրութիւնն է սէր տարածողա-

կան, պատշաճի նմա հիւրընկալութիւն, մի ի հնազոյն առաքինութեանց, յայտնի նա արտաքին նշանօք, զոր չկարէ որ չճանաչել:

Գեղեցկութիւն բարեսիրութեան յամենայն գծագրութիւնս դիմաց տպաւորէ զհաճոյական իմն պայծառութիւն, աչք կենդանանան, ճակատն լայնի, երեսքն գունաւորին, շրթունքն կիսաբաց լինին, մկանունք ծնօտից ամփոփին շնորհօք իմն եւ քաղցրութեամբ, տեսիլ դիմաց ծիծաղի առ ի բացայայտել զուրախութիւն եւ զբերկրութիւն սրտին. « Սրտի բերկրեցելոյ երեսք ծաղկին » ասէ Առակն (ԺԵ. 13):

Եւ սակայն մարդն կեղծաւորի եւ ծիծաղ նորա չէ միշտ ի նմա անսխալ նշան բարեսիրութեան նորա:

Կեղծաւորութեանն զոլով մի ի չարազոյն արուեստական հնարից քաղաքական

կենաց, և երբեմն արդիւնք ունել ինչ հանճուքեան: Ընդդէմ այսր անպատշաճութեան՝ ծիծաղն և հասարակաբար նշանակ զոնէ երկդիմի զուարճալի զգացմանց, զոր փորձեմք մեք, կամ զոր կամիմք ազդել: Այնպէս սովորեալ եմք մեք ի հանդիպել այսր նշանի ի վերայ շըրթանց, որպէս զի ի չար իմն զուշակութիւն կամ յանախորժ համարիմք՝ յորժամ չտեսանիցեմք զայդ ի դէմս անձանց որ ընդ մեզ ունիցին կցորդութիւն:

Միով բանիւ՝ բարեսիրութիւն և զգայութիւն ինչ այնպէս սեպհական մարդկային սրտի, զի որ դադարի ունել զփորձ նորին, պարտի համարիլ իբրեւ եակ ինչ հիւանդ կամ պակասաւոր: Սեւամաղձոտքն, երեւակայական հիւանդքն, եւ այլն, են ի դէպս յայսոսիկ: Բնական հիւանդութիւնքն զոր կրեն նոքա՝ քշուառ արդիւնս տան ի կարի յոյժ առանձնասիրութիւն ածել զնոսա,

եւ կորզեալ ի նոցանէ զհակամիտութիւնն, որպէս ի պարտուց վերաբերութեան :

Ըստ չափու ծերութեան մարդոյ կորուսանէ նա առաւել քան զառաւել զպիտոյս յարելոյ յայլս, ամփոփի նա յանձն իւր, հրաժարի յամենայն հաղորդակցութենէ եւ յամենայն պատասխանատուութենէ ընդ ժամանակակիցս իւր :

Որպիսի ցաւալից եւ ողբալի վիճակ է մարդկան, որոց բոլորովին սպառեալ իցէ զզացումն բարեսիրութեան, սեւագոյն գոլորշիք պատեն զնոսա, եւ ոչ ես մտին ի սէր տեսակին իւրեանց :

Մարդատեացքն կամէին արդեօք զի տիեզերք համօրէն հաղորդակիցս լիցին ատելութեան իւրեանց ընդդէմ մարդկային ազգի, իղձ լինին նոքա սերմանել յամենայն սիրտս զտհաճութիւն իւրեանց եւ զարհամարհութիւն : Միշտ երկմիտք եւ կասկածոտք . բարեկամութիւնն, սէրն,

վարկն, ակնածութիւնն, եւ որ այլն եւս՝ են վասն նոցա պատրողական զգացմունք, յորոց ազատ են նոքա բոլորովին :

Սակայն մարդատեցութիւնն թուի լինել մի ի տխրագոյն հետեւանաց առաւելազանց քաղաքականութեան մարդկան :

Ո՜վ երջանիկ ժամանակացն, ուր այր իւրաքանչիւր զհետ գնայր ա́զդման պաշտպանողն բարեսիրութեան , ժամանակ այնչափ գովութեամբ յիշատակեալ նահապետական բարուց, ուր ամենայն սիրտ վստահիք էին , ուր ամենայն թշուառք ժողովեալք լինէին մարդասիրութեամբ , եւ ուր ամենայն աքսորեալք մխիթարէին :

Ցայս նախկին ժամանակ որ ոսկեղէն դար եղեւ նախահարց մերոց, ոչ երբէք այր չքաւոր ի զուր օգնութիւն ի նմանւոյ իւրմէ խնդրէր, երբէք ճանապարհորդի մոլորելոյ ի ճանապարհի չպակասէր հիւրընկալու յարկ ինչ, թողեալ լինէր

նա հանդարտութեամբ ի ձեռս թիկնակից եղբարց իւրոց :

Առատամիտ լաւութիւնն եւ պաշտպան գրութիւն՝ ժամանակակիցք են ընդ աշխարհի :

Մարդն եղեւ բարեսէր, նախ քան զլինել բարեկամ :

Այն որ այնչափ հեռացուցանէ զանմիտն ի ճանապարհաց ճշմարտութեան եւ ի շաւղաց երջանկութեան իւրեանց՝ է անծանօթութիւն զանձնէ. քանզի ոչ ճանաչէն զինքեանս, եւ ոչ զայլս :

Այն ամենայն զիտութիւն զոր ուսանին մարդիկ ոչ այլ ինչ է, եթէ ոչ տգիտութիւն աշխատանօք՝ ստացեալ, յորժամ հեռացուցանէ զնոսա ի միայն ճշմարիտ եւ ի կարեւոր գիտութենէն, ի ծանօթութենէ զանձնէ, որ է մայր ամենայն առաքինութեանց, եւ մանաւանդ բարեսիրութեան :

Ուրումն ի բարոյական իմաստասիրաց

յիշատակեալ զերեւելի արձանագրութիւնն Դեղբեան տաճարին, թէ ԾԱՆԻՐ ԶՔԵԶ, ասէ այսպէս. « Ազդարարութիւն ինչ էր « այն Աստուծոյ առ մարդիկ, յայտ առ-« նելով նոցա, թէ ի մերձենալ առ Աս-« տուածութիւն եւ ի մտանել ի տաճար « նորա, պարտ էր *ճանաչել զանձն* ։

« Երէ քաջիկ զմեզ ճանաչէաք, ասէ, « խիստս առ մեզ, եւ ներող յոյժ առ այլս « հանդիպէաք ։ Արդարութիւնն յորժամ « խիստ է բախի ընդդէմ ողորմութեան ։ « Ոամիկն փոխանակ բարեսէր լինելոյ, « չարասէր է, բերեւ եւ չարախօս. հրէշ « ինչ է, որ յամենայն ուստէք արձակէ « զլեզու, որ զամենայնէ խօսի, եւ ոչ « ինչ գիտէ, որ ընդ ամենայն հայի « եւ ոչ ինչ տեսանէ, որ ընդ ամենայն « ծիծաղի եւ լայ, պատրաստ է նա « աղմուկ յարուցանել, ապստամբիլ, « եւ մարտնչել ։ Սեպհական է նմա

« փորձել լծընկեց լինել մանաւանդ,
« քան զազատութիւն իւր բարւոք
« պաշտպանել : »

Այս ամենայն մոլորութիւնք, այս ամենայն հակամիտութիւնք առ չարասիրութիւն եւ առ չարութիւն յառաջ գան անշուշտ յանփութութենէ մարդկան ճանաչելոյ զանձինս, եւ ուսանելոյ զայն, որ բաւական իցէ ի ճշմարիտ երջանկութիւն ածել զնոսա :

Նման է մարդն առն թագաւորի որ ունիցի զիւրեւ նուազունս ոմանս յիմաստնոց եւ ամբոխ մի մեծ պալատականաց :

Առաքինութիւնք եւ ճշմարտութիւնք զարհուրեցուցանեն զնա խիստ դիմօք իւրեանց, եւ մերժին իսկ ի նմանէ իբրեւ զի տաղտուկ ածիցեն : Մոլութիւնքն են շողոքորդքն, որք տանին զնա ի թշուառութիւն հակմամբ հեշտութեանց :

Այլ փորձն աւարտէ, յանդիման առնէ-

լով նմա զտխուր հայելին նորա, թէպէտեւ յոյժ անազան :

Յորժամ ստանայցէ մարդ այսու հաւատարիմ հայելեաւ զծանաչումն զոյութեան անձին իւրոյ, տեսանելով յայն զամենայն պակասութիւնս իւր, եւ յետ այնորիկ զիմիրդ կարիցէ նա բարեսէր լինել. « Մարդ որ անձին ատելի է, կարիցէ՞ նա սիրել զոք. » ասաց հանճարեղն Երազմոս:

Չկարէ նա ելանել յայս տխուր վիճակէ եթէ ոչ խաբիլ եւս, հայելով սնափառութեամբ ի սուտ բարիսն զոր ունի, եւ արհամարհութեամբ ի ճշմարիտ բարիս անդ զոր վայելել չկարիցէ: Ուստի տեսանի նա այնչափ մեծ եւ ճոխ եւ հզօր, փոխանակ սիրելի լինելոյ, երկիւղալից լինի, փոխանակ բարեսէր լինելոյ, չար լինի եւ ծաղրասէր. քանզի ըստ Կիկերոնի « Ծաղրն ծնանի ի զռհ իւրս արհամարհութենէ : »

Բայց այս զոհութիւն է նհարք ինչ, զոհութիւնն է արտաքուստ եւ խոցն է ի խորս սրտի :

Սակայն լիցուք մեք բարեսէրք, փոխանակ զայրանալոյ ընդդէմ յիմարութեանց մարդկան, ողբասցուք զմոլութիւնս նոցա. եւ այնու շահեսցուք, զզուշանալով մեզ :

Պարտ է զի իմաստունն հեռասցի ի հիւանդէն զոր չկարէ բուժել, դեղք զայրացուցանեն զանբուժելի հիւանդութիւնս: Կարծեմ յայս հայի ասացեալ իմաստնոյ, ուրումն թէ « Առաւել օգտակար է հրաժարիլ ի մեծամեծաց, քան զանգատել զնոցանէ : »

Չափազանցութիւնն նաեւ ի բարին չար ինչ է. խստութիւնն իմաստասիրաց ոմանց է մայր բազում մոլորութեանց :

Չիք յաշխարհի զովելի չափազանցութիւն բաց յերախտագիտութենէ. չկարէ նա զմարդ մոլորեցուցանել :

Երախտագիտութիւնն բերկրութիւն է բարեսիրաց, եւ ծանրութիւն ապերախտից. ոչ միայն պարտք ինչ է մասնաւոր, այլ եւ առաքինութիւն, որ բազում բարիս ծնանին. քանզի նա է գին եւ քաջալերութիւն բարեսիրութեան :

Թէպէտեւ բարեսիրութիւնն ունի այսչափ քաղցրութիւն հոգւոյ որով լնու. այլ դժուարճութիւն նորա չէ անխառն ի նեղութեանց :

Ապերախտութիւն է իսկ սատան որ ամբոխէ զայս հրեշտակային երջանկութիւն. թունաւորէ նա բազում անգամ զբարերարութիւնս յաղբեր անդր նորին. արդիւնք նորա առաւել մահաբերք են, լքուցանելով զտկար հոգիս, փոխելով զառատամտութիւն նոցա ի կասկած, եւ զյօժարութիւն նոցա յանզանձգանութիւն :

Այս ապերախտութիւն իփորձ դժուա, րին արկանէ զառաքինի հոգիսն, զլանալով

նոցա զմիայնակ արժէս, որոց անձկան, զերախտագիտութիւնն եւ զբարեկամութիւն, յոր յուսային նոքա տեսանել զհատուցումն վարկի եւ սիրոյ, զտանեն զմոռացումն, կամ զանիրաւութիւն եւ զատելութիւն եւս ։

Այլ չէ պարտ զարմանալ եւ ոչ զայրանալ ընդ այն. պարտ է ասել եւս, թէ ապերախտութիւնն առաւելու զարդիւնս բարեսիրութեան, եւ յիրաւի՛ քանզի բարեսիրութիւնն ոչ արդեօք արժանի լինէր անուան առաքինութեան, եթէ չունէր նա ստէպ պիտոյս զօրութեան յաղթելոյ, հաստատուն կալոյ, եւ եթէ խոստանայր մեզ զուարճութիւնս անխառն ի տրտմութեանց ։

Ծանուցանէ մեզ զայս Պլուտարքոս, ասելով այսպէս. « Պարտ է մնալ ապե« րախտութեան բարեկամաց, որոց սէրն « շահախնդիր է, են պարք մեղուաց

« զոր մուծանես ի փերակ, եւ որք լիցին
« վնասակար պիծակք ։ »

Են բազում մարդիկ որք ընդունին ի միենչ պարզեւս եւ ծառայութիւնս, զինչս մեր եւ զգոյս սիրեն նոքա, եւ ոչ զբարեսիրութիւնս. զի յորժամ բախտն թողու զմեզ, թողուն եւ նոքա յայնժամ ։ Իսկ ցաւել ինչ պարտ իցէ ընդ այս. ոչ. քանզի հաւանեալ եմ կարծեաց Պլուտարքեայ, թէ զրկիլ յայսպիսի բարեկամաց, է շահել մանաւանդ քան կորուսանել. զի է ճանաչել շօշափմամբ զխարդախեալ ինչ դրամ ։

Կեանք առն բարերարի է հանապազ ի պատերազմի ընդդեմ վնասակար հակամիտութեանց, ոչ զոյ առաքինութիւն ինչ, յորոյ վերայ չիցեն յարձակեալ, եւ որում ոչ ի ծածուկ ական հատեալ զաղտնի ինչ մոլութեանց ։ Ո՞ կարծէ թէ բարեսիրութիւնն եւս չիցէ անտի զերծ. զի բազում այն է զի պետս ունի նա պաշտպանու-

թեան յերեսաց ազգ ինչ սնափառութեանն, որ կամի ապրիլ յայն յաքսմրի ։

Է երբեմն զի տեսանին մարդիկ բարեկերս առ հաւատաքս իւրեանց, կամ յոր ստահճանաւ, հանճարով, եւ ճոխութեամբ զկիցեն զնոքօք. եւ յայլմէ կողմանէ՝ երեւին նոքա սակաւիկ ինչ զոռոզ եւ ցուրտ առ ստորակայս իւրեանց ։

Պարտ է զգոյշ կալ անտի, իբրեւ ի կեղծ ինչ բարեսիրութենէ, քանզի ճշմարիտ բարեսիրութիւնն ունի զարմատ իւր ի սեր հաւատարութեան ։

Հաւանեսցուք կարծեացն Սենեկայ որ կամէր՝ կի վարիցին բարեսիրութեամբ ընդ ամենայն մարդիկ, ընդ զերիս անգամ, ասելով այսպէս. « Գերիք, ասասցիր « յաւէտ բարեկամս ի նեղութեան եւ յըն- « կերութիւնս զերութեան. քանզի հպա- « տակիս եւ դու բախտին իբրեւ զնոսա։ »

Ասէ Պղատոն, թէ « Չիք բազաւոր, որ

« ոչ իշանիցէ ի գերւոյ միոյ, եւ ոչ գերի,
« որ ոչ իջեալ իցէ՝ ի թագաւորէ միոջէ :
« Այս ճիլ է ճշմարիտ ազնուական.
« — Որ զնոզին իւր ազնուացուցանէ : »

Համայս զգածեալք հաստատուն եւ զօրավալից բարեսիրութեամբ՝ կարեկից լիցուք տկարութեանց այլոց, մի՛ լիցուք խիստ, բայց եթէ առ տկարութիւնս մեր. իսկ եւ պահեսցուք միշտ յուշի մերում զայս գեղեցիկ եւ պարզ մտածութիւն իմաստնոյ ուրումն, թէ « Ոչ ի ձեռս մեր է լինել « փարթամ եւ հզօր, բարձս ունել պաշ- « տամանց, փառս, կամ պատիւս, « այլ ոչ ինչ կարէ խափանել զմեզ լինել « բարի, առատամիտ, մարդասէր, իմաս- « տուն, եւ բարեսէր : »

Կնքեսցուք զհակիրճ զայս խորհրդածութիւնս մեր գեղեցիկ բանիւք իմաստախոհ ինքնակալին Մարկոսի Աւրելիոսի որ ասէր.

« Յանդիմանեմ կամ ուղղեմ զչարսն՝
« եթէ կարես. ապա՛ թէ ոչ՝ յիշեմ թէ վասն
« Նոցա տուեալ է քեզ Աստուած զքաղ-
« ցրութիւն եւ զմարդասիրութիւն :»

Եւ դարձեալ՝ եթէ « Հայեմց ուշի ուշով
« ի խորս սրտիդ, զոյ անդ աղբիւր մի
« բարեաց որ բղխեսցէ անսպառ, եթէ
« եւ դու պեղեսցես զայն միշտ :»

ՎԵՐՋ.